Լիկաոնիա, Լիւդիա, Յոնիա եւ Կարիա)՝ եղեւ նախ նահանգ Հռոմայեցւոց՝ Ասիա անուն[1] (132 նախ քան զՔր.), իբրեւ թողեալ ժառանգութեամբ յԱտտաղեայ Գ. արքայէ Պերգամայ։ 2. Յետ այնորիկ երեքին պատերազմունքն Միհրդատայ (յամի 88—64) մղեցին տանել տակաւ յառաջ կոյս յարեւելս զզօրավարս Հռոմայեցւոցն զՍիւղղա (88—85), զԼուկուղղոս (74—68) եւ զՊոմպէոս (67—63) անցանել ընդ Տաւրոս եւ առնել զբաթագաւորութեանն Սելեւկեանց՝ զԱսորիս զգլխաւոր վայր արքայութեանն արկանել ընդ նահանգաւ (64)։ Ի ժամանակի պատերազմացս կամ՝ փոքր ինչ յետոյ լինէին նահանգ եւ այլ եւս թագաւորութիւնք որ փոքու կամ մեծաւ հաղորդ անցիցն էին՝ հակեալք ի սորա կամ ի նորա կողմն։ 3. Թագաւորութիւնն Բիւթանիայ՝ ուր թագաւորէին (յամի իբրեւ 280) թագաւորք Նիկոմեդէսք եւ Պրուսիասք, յետ վախճանելոյն Նիկոմեդեայ Գ. եղեւ նահանգ Հռոմայեցւոց՝ իբրեւ ժառանգութիւն յամի 75 նախ քան զՔր., 4. Թագաւորութիւնն Կիլիկիայ յամի 69, 5. Թագաւորութիւնն Պափլագոնիայ, եւ 6. Մեծ (արեւմտեան) մասն թագաւորութեանն Պոնտոսի ուր Միհրդատքն թագաւորէին՝ յամի 64, 7. Թագաւորութիւնն Կիպրոսի յամի 57, 8. Թագաւորութիւնն Գլիւկիայ յամի 50, եւ 9. Թագաւորութիւնն Գաղատիայ կամ Գաղղոգրեկիայ (հաստատեալ յամի իբրեւ 280)՝ յամի 25 նախ քան զՔր.։

Այլ մինչ չեւ Հռոմայեցւոց ընդ Տաւրոս անցեալ, այնչափ տկարացեալ էր Սելեւկեանցն թագաւորութիւն՝ յապստամբութենէ Պարթեւաց (256), Բակտրիացւոց (254), Հայոց (190), Հրէից (130), եւ ցեղից ինչ Արաբացւոց եւ Ասորւոց, եւ ի ներքուստ պառակտեալ ի գժտութեանց արքունական տոհմին եւ ի հազարապետացն բռնութենէ, զի վաղ իսկ զրեթէ քայքայեալ տէրութիւնն էր, եւ մնացուածոց կողմանք Ասորւոց, միջավայր թագաւորութեանն, ի բազում մանր մանր թագաւորութիւնս էր լուծեալ։

Սակայն Հռոմայեցւոց որ յետ այնորիկ ի ձեռն Անտոնեայ եւ Օկտաւիանեայ (40—30 նախ քան զՔր.) եւ առաւ առ կայսերօք գործ կալան յարեւելս՝ ոչ այն կամք էին, նա եւ ոչ դիւրին իսկ զայնպիսի զմանր թագաւորս[2] միանգամայն ի միասին բառնալ իսկ եւ իսկ ի միջոյ, այլ կնքեալք իսկ զօրավարք Հռոմայեցւոցն՝ Պոմպէոս, Անտոնիոս, Օկտաւիանոս եւ յետ նոցա կայսերք կացուցանէին զնոսա կամ հաստատէին իբրեւ թագաւորս կամ ցեղապետս[3] նախադաշնակիցս կամ դաշնաւորս[4], կախեալս զՀռոմայեցւոցն ծոխութենէ, զի մինչ չեւ հասեալ դիպող ժամուն արկանելոյ զկողմանսն զայնոսիկ ընդ նահանգաւ՝ արկցեն զթագաւորս նո-

1 Asia propria. 2 Reguli. 3 Φυλάρχοι. 4 Socii.

ցս ի կէր ըստ հռոմէական քաղաքականութեանն ի նուաճումն հպա-տակութեան ժողովրդեանն նոցա իւրաքանչիւր, ի նախանձ զգու-շութիւն նոցին ևս թագաւորաց առ միմեանս, ի նենգաւորութիւն և ի պատասխանատուութիւն ընդդէմ զօրութեանն Պարթևաց, որ էր նոցա այնուհետև մի միայն ախոյեան յարևելս[1]:

## 18

Այսպիսի ինչ անցութիւնք շուրջ զՀայոց աշխարհաւ էին՝

1. Գամիրք կամ Կապադովկիա որոյ թագաւորութիւն ի պարսկական ժամանակաց յԱքեմենեան տոհմէ սատրապի առեալ սկիզբն և յետ առ Սելևկեանս նահանգ Մակեդոնացւոց լինելոյ ի ձեռն Եւմենեայ՝ ապա միւսանգամ կանգնեցաւ թագաւորութիւնն (յամի իբրև 300 նախ քան Ք.Ք.) ի ձեռն Արիարաթայ Գ. որ միայն ապրեցաւ ի կոտորածէ ազգատոհմացն փախուցեալ ի Հայոց աշխարհ: Տևէր նոյն հարստութիւն մինչև ցԱրիարաթ Ե. (✝ 91 նախ քան զՔ.Ք.): Այնուհետև ընդունին Գամիրք ի Հռոմայեցւոց թագաւոր՝ զԱրիոբարզան Ա. (89) ընդ որում զառաջինն հանեալ Տիգրան արքայ Հայոց ի ձեռն զօրավարաց իւրոց Միհրանայ և Բագոայ, մինչև մերժեալ զնա ի թագաւորութենէ կացոյց զԳորդիոս զորդի Միհրդատայ, որ Արիարաթ Թ. կոչեցաւ: Թէպէտ և հաստատեցաւ այսուհետև Արիոբարզան ի ձեռն Սուղղայ, այլ Տիգրան հան զնա միւսանգամ փախստեայ և տարաւ 30,000 գերի ի Տիգրանակերտ, մինչև յետոյ ի ձեռն Պոմպէի հաստատեցաւ Արիոբարզան յաթոռն (66): Վերջին թագաւոր նոցա Արքեղայոս քուրմ Կոմանայ կացուցեալ յԱնտոնեայ, կոչեցաւ առ Տիբերիոս ի Հռոմ և մեռաւ ի ծերութեանն (17 յետ Ք.Ք.):

2. Թագաւորութիւնն Պողեմոնեանն Պոնտոսի՝ էր մասն մի հնոյ թագաւորութեանն Պոնտոսի, յորում թագաւորեցին նպաստաւորութեամբ զօրավարացն Հռոմայեցւոց Դարեհ և Պողեմոնք Ա. և Բ. մինչև արար և զայն ընդ նահանգաւ Ներոն:

3. Փոքր Հայք նահանգ Սելևկեանց, եղև թագաւորութիւն ուրոյն ի ձեռն Զարիադրայ կուսակալի (190 կամ 189 նախ քան զՔ.Ք.)[2] և պատմի տիրել ցեղի նորա ցամն 80 իբրև թագաւորս դաշնաւորս Հռոմայ: Յետ այնորիկ տային Հռոմայեցիք զերկիրն զայն դրացի թագաւորաց իբրև յաւելուած իշխանութեանն նոցա. Պոմպէոս ետ Տիգրանայ որդւոյ Տիգրանայ Մեծի արքայի Հայոց և յետ զնա առնելոյ ձերբակալ վասն տակաւին ընդ հօրն զժտելոյ՝ ետ զայն Պոմպէոս, որպէս և յետոյ Կեսար, Դեիոտա-

1 «Հին իմն (ասէ Տակիտոս) և ընդունելի սովորութիւն հռոմէական ժողովրդեանն է՝ և զթագաւորսն անգամ գործիս ծառայութեան ունել»։ յԱգր. ԺԴ. 2:

2 Ստրաբ. ԺԱ. և կայ ևս դրամ պղնձի Զարիադրայ արքայի գտեալ ի Մաշա-տիա այսպիսի ինչ գրով շուրջանակի Ζαδριάδου Βασιλέως Βασιλέων.

Նախ երեւին նոքա գոնեայ իբրեւ դաշնաւորք ի զօրուն Երուանդեանն Տիգրանայ արքայի Հայոց հանդերձ Աղուանիւք[1], եւ ի սորա որդւոց Վահագն աստուածութեան պատիւ ի նոցանէ գտանէր[2]։

Գուգարք որ էին ընդարձակ նահանգ Հայոց աշխարհին ինն գաւառօք, բազում անգամ կից իմն էին ընդ Վրաց թագաւորութեան[3], եւ ընդ սորա իշխանութեամբ էր բդեաշխն Գուգարաց[4] Սակայն այլ ոմն էր թագաւորն Վրաց եւ այլ բդեաշխն Գուգարաց[5], թէպէտ եւ տանուտէրութիւնն Գուգարաց էր, որպէս հաւանութեան թուի, ի միջէ տոհմէ թագաւորացն Վրաց[6], յայն սակս եւ մեծ բդեշխն Գուգարացւոց կոչէր եւ բդեաշխ Վրաց[7], եւ լինէր գոնեայ ի ժամանակս ինչ արքային Վրաց լինել միանգամայն եւ բդեաշխ Գուգարացւոց[8]։ Յաճախագոյն անուանք թագաւորացն եւ բդեշխացն էին Փարսման[9], Միհրդատ եւ Աշուշայ։ Քաղաքայինն անցք Վրաց, որպէս ի դէպ իսկ էր, էին զիրկընդխառն ընդ անցից Հայոց աշխարհին. այլ կախեալ եւ զՀռոմայեցւոց ի ժամանակաց անտի Արտոկայ[10] արքայի նոցա որ էր դաշնաւոր ընդ Տիգրանայ եւ ընդ Միհրդատայ, եւ ի պնդել Պոմպէի զհետ Միհրդատայ ընդ աշխարհն Հայոց, բախեցաւ Արտոկ ընդ նմա զԿուր գետով, բայց ի նեղ անկեալ ետ պատանդս եւ եմուտ ի դաշինս ընդ Հռոմայեցւոց՝ այս զառաջին նուագ (յամի 64—63 նախ քան զՔր.)[11]։ Մանաւանդ յետ քրիստոնէութեանն առաւել եղեւ կապ եւ զօդ նոցա ընդ Հայոց. բայց այլակերպութիւն լեզուին պահեաց զնոսա ուրոյն եւ զատ ի մեծ մարմնոյ Հայոց ազգին եւ առաւել եւս բաժանեալ անջատեցան ի պատճառս կրօնից (յամի իբրեւ 550)։ Զորոց յետոյ մի բան միջէ։

6. Աղուանք կամ Աղբանացիք՝ արեւելեան դրացիք Վրաց եւ կցորդք անցից նոցա՝ առաւել եւս անյայտք քան զնոսա բառ իբերանց ծագմանն են։ Ազգ անյօժար ի մշակութիւն, զօրաւոր հեծելովք եւ վարժ յորս եւ երեւելի պատուականօք[12]։ Ի բազմանձնեայս

է նոյն ընդ յունականն անուանն՝ Γεώργοι երկրագործք կամ մշակք. եւ վաղ իսկ ի նոյն անուն կոչէ զՎիրսն Պոմպոնիոս Մելա աշխարհագիր հռոմայեցի։

1 Խոր. Ա. Գլ. ԻԹ։

2 Խոր. Գլ. ԼԱ։

3 Խոր. Աշխարհացոյց. Վիրք։

4 Խոր. Գ. Գլ. Կ։

5 Բուզ. Գ. Գլ. ԺԵ։

6 Խոր. Բ. Գլ. Ը. եւ ԺԱ։

7 Խոր. Գ. Գլ. Կ։ — Փարպ. էջ 80 եւ 186։

8 Խոր. Գ. Գլ. Ձ։ — Նշանաւոր է յայս ի մեսրոպեան հնոյ դահեկանաց պատկերագիր միոյ ուրուք ի բդեշխացն Վրաց կամ Գուգարաց, յորում երեւին թուաւ գէսք արկեալք գանգրաձեւ եւ գինդք յականջսն, եւ գիր յունարէն շուրջանակի այսպէս՝ ουσας πετιαξης Ιβηρων Καρχηδων, Աշուշայ բդեաշխ Վրաց Կարքեդոյ (Գուգարաց)։ — Տես Վիսկոնտի Պատկերագր. յուն. Յաւել. Գ։ — Ամմիանոս Մարկեղինոս ոչ ինչ նուազ յատակութեամբ յիշէ զբդեաշխն անուն հնչեալ Vitaxa, Դպր. ԻԳ. Գլ. Զ։

9 Ըստ ոչ առհմայրն մատենագրաց՝ Pharasmanes, յաճախ առ Տակիտոսի եւ Դիոնի։

10 Ἀρτωκης.

11 Դիոն՝ Դպր. ԼԷ։

12 Ստրաբ. ԺԱ. Աղուանք։ Տես եւ Տակիտ. Զ. 34. 2։

այնուայլ ցեղից անտի յորոց խառնեալ ամփոփեալ էին Աղուանք ի միութիւն[1] էր ի հարաւակողմանն եւ ցեղ ինչ Հայոց ի գաւառէ Սիսակայ, որում առ առաջին արշակունի թագաւորաւ կարգեցաւ Առան ոմն անուն ի նմին տոհմէ նահապետ՝ պատուով բիւրաւոր կողմնակալութեան կամ բդեշխութեան, եւ Աղուանից իսկ սահմանք համարէին երբեմն գաւառք Հայոց՝ Ուտի, Շակաշէն, Ձոր Գարդմանայ, Կողթ եւ այլ կողմանք[2]: Մեւս եւս ցեղ բազմաւոր էին Գարգարացիք՝ զորս չէ իսկ պարտ շփոթել ընդ Գուգարացւոց. զի էին նոքա սկիւթացի ինչ կամ սարմատացի ազգ խառնեալ ընդ Աղուանից ի հիւսիսոյ առ ստորոտ մասին լերինք Կաւկասու որ Կերաւնեանն կոչիցի[3], զոր եւ Խորենացին թարգմանէ Շանթային[4]: Երեւելի քաղաքք նոցա էին Գաբաղակ Աղուանից, նիստ թագաւորին, Խաղխաղ՝ ձմերոց նոցա, որպէս երբեմն ձմերոց թագաւորին Հայոց, եւ Պարտաւ: Առանձինն իսկ անուանք թագաւորացն Աղուանից էին Առս-Մաղէն, Ուռնայր, Մաչական:
— Պատմութիւն սոցա որ ընթանայ կից ընդ Մարաց է խառն ընդ անցից Հայոց աշխարհին. Առս-Մաղէն կամ Մարազ-Մաղան[5] դաշնաւոր Տիգրանայ որդւոյ Տիգրանայ Մեծի եւ ծակառ ընդ Պոմպէի խառն ընդ արքային Մարաց (64 եւ 63), եւ նորին որդի Զոբեր ետ ձեռս ի Կանիդիոս (զինուորական) դեսպան[6] Պոմպէի[7]: Այնուհետեւ առաւել եւս խառն ընթանան իրք նոցա ընդ իրացն Հայոց, եւ յիշի իսկ թագաւորութիւն նոցա մինչեւ ցՅուստինիանոս եւ անդր եւս: Գտանեալ մասին իրիք Աղուանից[8] որ Գարգարացիքն կոչէին (զորոց արդ իսկ ճառեցաւ)՝ էր լեզու առանձինն ի Հայոց լեզուէ "կոկորդախօս, աղխաղուր, խժական, խեցբեկագոյն,, եւ Հայք իսկ ետուն նոցա գիր դպրութեան նորագիւտ[9]: Այլ թէ զկնի տակաւ անհետ ի պատմութենէ ազգն եղեւ՝ զայն դժուարին է ցուցանել: Յամի 1088 առին Սելճուկեանք (ցեղ ինչ Արաբացւոց) զԳանձակ, եւ տակաւ մեկնեցան բազումք յԱղուանից ի կողմանս Կաւկասու, եւ յետ պահելոյ ժամանակս ինչ զիշխանութիւն անկախութեան իւրեանց՝ լինի անհետ առհամայն գոյութիւն նոցա: Ոմանք համարեցան զաղթեալս զնոսա ի կողմանց Կաւկասու յայժմու Ափղանստան, եւ զԱփղանսն լինել Աղուանս:

7. Սոցա ի հարաւոյ եւ Հայոց աշխարհին յարեւելից՝ էր դրացի աշխարհն Ատրպատականի կամ հիւսիսային մասն Մարաստանի գլխաւոր քաղաքաւն Գանձակաւ եւ կամ Թաւրիժիւ, յորում յիշի լեալ թագաւորութիւն եւ թագաւորեալ Ար-

1 Մովս. ԺԱ:
2 Բուզ. Դպր. Ե. Գլ. ԺԴ: Խորեն. Աշխարհագրութ. Աղուանք:
3 Մովս. ԺԱ. Աղուանք (Γαργαρεῖς) — սոյս եւ Խոր. Բ. ԺԵ: Թովմաս եւ Խոր. Բ. Գլ. Ը. ի Հայկայ ծնունդ յառաջ բերել զնոսա, այլ ինքն իսկ Գ. Գլ. ԾԴ. ասենեալն պղպջեցուս զնէ զնոսա:
4 Խոր. Աշխարհագրութ. Սարմատիա:
5 Դիոն՝ ԼԶ. 37, կոչէ Ὀροίσης.
6 Legatus.
7 Դիոն անդ եւ ԼԷ. 3. 4:
8 Մովս. ԺԱ. սակ զԱղուանից թէ յ36 լեզուաց բաժանեալ էին:
9 Խոր. Գ. Գլ. ԾԴ:

## 19

Այդ իսկ ինկղեանէ հարստութեան թագաւորացն միոյ Արշակունեաց աթոռ թագաւորութեանն էր տրոհեալ Հայոց աշխարհին ի մասին իւիք Միջագետաց՝ զի ի մեծամեծ դիպուցն թագաւորքն մեր զանցս եւ զշարժմունս արշաւանացն պատերազմաց որոց ասպարէզ էր մանաւանդ երկիրն Ասորւոց եւ Հայաստանին կողմանք Միջագետաց նախ առ Սելեւկեանք եւ ապա առ Հռոմայեցւովք։ Համօրէն Միջագետք որ ի չորից կողմանց կցէին առէալ յարձակումն, յարեւելից՝ ի Պարթեւաց, յարեւմտից՝ ի Հռոմայեցւոց, ի հիւսիսոյ՝ ի Հայոց եւ ի հարաւոյ՝ յԱրաբացւոց, բաժանէին յերկուս երեւելի մասունս՝ Միգդոնիա (որ յետոյ զոնեայ ըստ հիւսիսային արեւմտեան կողմանն՝ կոչեցաւ Անթեմուսիա)՝ ընդ կողմն արեւելից, եւ Ուռհայաստան՝ ընդ կողմն արեւմտից։ Միգդոնիայ էր քաղաք գլխաւոր Մծբին՝ որ եւ Անտիոքիա Միգդոնացւոց կոչէր (այժմ Նսիբին), եւ քաղաքք առաւելք կամ բերդք՝ Դարաք (կամ Անաստասիուպոլիս), Կենէք, Միգդարա, Զաւրդա (կամ Մասպիէ կամ Մասփա), (այժմու՝ Տարա, Սէնն, Սինճար, Ճէզիրէ) եւ այլք։ Ի կողմն հարաւային կողմանն որ անապատ իմն էին՝ բնակէին ցեղք ինչ Արաբացւոց, եւ չէին ինչ անուանի քաղաքք՝ Հատրիք կամ Ատրիք (որ են այժմու աւերակքն Հէտառուրայ), Զայիթա կամ Զանիթա, Դուրա, Քարմանդա եւ Ուր։ Իսկ Ուռհայաստանի էին քաղաքք երեւելիք՝ Եդեսիա կամ Ուռհայ որ կոչէր յառաջն եւ Անտիոքիա[1] (այժմ Օրֆա) քաղաք գլխաւոր, Բատնէք (այժմ Սերուճէ), Կարրիք կամ Խառան (որոյ բնակիչք Հռոմայեցիքն կոչեցան), Նիկեփորիոն՝ յետոյ (ի չորրորդ դարէ հետէ) Կալլինիկոն՝ ապա (ի հինգերորդ դարէ հետէ) Լեւոնդուպոլիս (այժմ Ռակկա), Կիրկեսիոն (այժմ Քարքիսիա), Ապամեա (Րում-գալէ), Անթեմուսիա, Ուրսայնա (Ու-ազ-էլ-ամ), Կոստանդիա, Իշենք՝ եւ այլք։

Խնկղեանէ իսկ Մծբին քաղաք գլխաւոր Միգդոնիայ՝ էր քաղաք արքայութեան թագաւորացն Հայոց եւ կամ քաղաք զանձուց թագաւորին, որ թէպէտ եւ առաւ ի Լուկուղղոս (68) պաշարմամբ, բայց կալաւ զայն Տիգրան յետոյ[2]։ Այլ առ Տիգրանաւ Մեծաւ՝ ի վերայ այսր մասին Միջագետաց զօր ի վաղուց ունէին Հայք՝ յաւելաւ ընդ այլ եւս կողմանց Ասորւոց[3] աշխարհն եւ դրացի նահանգն Ուռհայաստանի։ Ուռհայեցիք ժողովուրդ յոյն եւ ասորի՝ էին լեալ ինքնօրէն աղէկամի՝ յետոյ կալով ի թագաւորացն Ասորւոց յամէ 137 նախ քան զՔր. ի ժամանակի զի կռուէր

1 Պլին. Ե. 21. որպէս եւ ի վերայ դահեկանաց կայ "Անտիոքիա ի վերայ Կալլիրոյէ" (գեղեցկահոսն) վտակի։

2 Դիոն Կաս. ԼԵ. 7։

3 Տես Յուս. Ա. էջ 589։

Տրիփոն ընդ Անտիոքայ Է.։ Ցուցեր ի նոսա ազնուականացն ճոխութիւն, ազատութիւն քաղաքացւոց, եւ յունական իմն կեանք ընդ սատրապհական իշխանօք որ եւ ցեղապետացն կամ թեւակալքն կոչէին։ Ոչ միշտ որդի ի հօրէ զիշխանութիւնն առնոյր ցեղապետն, այլ երեւելիքն յԵդեսացւոց ընտրէին միշտ ի դրանց ազգաց այր մի՝ կացուցանել ի գլուխ առաջնորդութեանն պաշտպանել նոցա ոչ միայն յարուարձանեայ ազգաց այլ եւ ի չարեաց սակաւապետութեան[1] եւ անիշխանութեան, բայց կամէին միանգամայն չթողուլ թագաւորին այնպէս ինչ հզօր իշխանութեամբ՝ մինչեւ զամենայն ինչ կարող լեր ի վերայ հարկաւոր կարծանելոյ։ Ի կարգի սոցա թագաւորաց որոց անուանք են Աբգար կամ Մանոս (կամ Մաան) եւթներորդ էր Աբգար որդի Աբգարու որ նշանաւորեալ եւ դաշնաւոր եղեալ էր ի բանակին Տիգրանայ արքայի Հայոց ի մեծա պատերազմի ընդդէմ Պոմպէոսի (69 նախ քան զՔր.), բայց ի ձախողել պատերազմին անց ի կողմն Հռոմայեցւոցն եւ եղեւ միաբան եւ թիկունք օգնականութեան Պոմպէոսի (64), բայց եւ այնպէս յետ այնորիկ խարդախօք մոլորեցոյց նա զԿրասոս յանապատին անդ Միջագետաց (53)[2].

2. Որպէս հաւանութեամբ թուի՝ իսկ եւ իսկ յետ սորա կոչեցաւ ի թագաւորութիւն Ուռհայեցւոց Աբշամ արքայ Հայոց (յամի 34 նախ քան զՔր.)։ Վասնզի իբրեւ ձերբակալն եղեւ Արտաւազդ՝ զօրն հայազգանոյ եւ նախարարք արքունեաց որք ի Միջագետս էին՝ անդէն ի Մծբին ընտրեալ էին զԱբշամ զհօրեղբօրորդի Արտաւազդայ ի պայազատութիւն թագաւորութեանն Արշակունեաց, քանզի որդիքն Արտաւազդայ փախեալ էին փախստական ընդ հօրն յԱղեքսանդրիա։ Այլ մինչ դեռ Արտաքսիաս այն կամ Արտաշէս որդի անդրանիկ Արտաւազդայ յետ ամաց ինչ եկն կալաւ զգահն աշխարհին Հայոց, ի նմին ժամանակի՝ որպէս հաւանութեամբ թուի, եւ Աբշամ ընդդիմեցաւ յաւագանւոյ անտի Ադիաբենացւոց, եւ այնպէս սկսաւ նա իշխել իբրեւ թագաւոր դաշնաւոր եւ հպատակ Հռոմայեցւոց[3] ի Միջագետս Ուռհայեցւոց եւ ի մերձաւոր նահանգս, ունելով սահմանս ի հիւսիսոյ զՄասեաց եւ զԿորդուաց լերինն, յարեւմտից զԵփրատ, յարեւելից զԱդիաբենէ կամ զԱսորեստան։

3. Յետ Աբշամայ († 3 նախ քան զՔր.) զոր անուանեալ կոչէին Ասորիքն Մանովա կամ Մաան ըստ անուան թագաւորաց կամ տեղապահացն Ուռհայեցւոց[4], թագաւորէր նորին որդի որոյ բուն հայ անուն անծանօթ է եւ միայն յայտնի՝ անուանքն զոր կոչեցին նմա Ասորիք ըստ իւրեանց թագաւորացն անուան՝ Աբգար (իբրեւ 3 ամօք յառաջ քան զՔր.)։ Սա փոխէր զաթոռ

1 Oligarchie.
2 Դիոն կաս.։
3 Խոր. էջ 206։
4 Խոր. էջ 205։

թղթով դաշանց կարգի պայմանադրութեանն սահմանելոյ ի Պարթեւս. ընկալաւ զնոսա հազարապետն յԵղեւթերայքն մեծապատուով եւ խօսեցաւ բանս խաղաղութեան[1]։

4. Յետ վախճանին Աբգարու (յամի իբրեւ 36) Անանուն կամ Անանէ (Մանու, Մանով) նորին որդի եկաց թագաւոր յՈւռհայաստանի։ Այլ Սանատրուկ որդի Աւղէի քեռն Աբգարու որ կարգեալ էր զնա վերակացութեամբ ի վերին կողմանս տէրութեան իւրոյ (ի Հայս)՝ կալեալ անդէն թագ նպաստաւորութեամբ Բագրատունեաց եւ Արծրունեաց որ դայեակքն իսկ լեալ էին նորա. քանզի սնեալ էր նորա Սանոտ քոյր Բիւրատայ Բագրատունւոյ եւ կին Խոսրենայ Արծրունւոյ. եւ յետ ամաց ինչ խաղայր զօրաժողով ի վերայ Անանէի։ Բայց չյերկարեաց պաշարումն քաղաքին Եդեսացւոց, քանզի Անանէի խորտակեալ բարձքն ի կճեայ սեանէն անկելոյ ի վերայ նորա՝ յորժամ վասն շինուածոյ վերնատան ապարանից իւրոց կացեալ տայր հրաման, յղէին վաղվաղակի քաղաքացիքն պատգամ առ Սանատրուկ տալ ի ձեռս նորա զքաղաքն հանդերձ գանձուք թագաւորին. մտեալ ի ներքս թագաւորն զամենայն արու զաւակ տանն Աբգարու մաշեաց ի սուր սուսերի։

Ըստ սովաւ դէպ լինէր առաքել Մեհրդատայ ուրումն ի Հռոմ՝ երթալ ունել օգնականութեամբ Հռոմայեցւոց զաթոռ թագաւորութեանն Պարթեւաց փոխանակ Գոտարզայ ազգայի նորա։ Բայց Սանատրուկ[2] քանզի բարեկամութեամբ էր ընդ Գոտարզայ՝ խորամանկութեամբ արգելոյր զՄեհրդատ յերկարագոյնս ի քաղաքին Ուռհայեցւոց պատճառանօք մեծարանաց եւ ընթրեաց, մինչեւ պատրաստեցաւ Գոտարզ ի մարտ պատերազմի եւ յաղթեաց իսկ (49)[3]։

Որպէս Աբգար զԵդեսիա եւ Անանէ զապարանս արքունի՝ նոյնպէս եւ Սանատրուկ զՄծբին որ խախտեալ ի շարժմանէ էր՝ նորոգեալ շինէր կրկին պարսպաւ կանգնեալ իւր անդրի ի հրապարակին՝ մի դրամ ի ձեռին, նշանակ սպառելոյ գանձուց ի ծախսն[4]։

5. Ընդ պատմութեան վերջին երեցունց թագաւորացս խառն է եւ պատմութիւն քրիստոնէութեան։ Ըստ աւանդական մատենից դիւանին Եդեսիայ (զոր ընթերցեան Եւսեբիոս Կեսարացի ի 4որդ՝ եւ Մովսէս Խորենացի ի 5երորդ դարու) յախտ դժնդակ անկեալ էր Աբգար յեւթն ամաց հետէ (ըստ յետին գրոց Ասորւոց՝ ի բորոտութիւն)։ Իբրեւ ազդ եղեւ նմա համբաւ բժշկութեանց Քրիստոսի ի ձեռն Մար Իհարայ բդեշխի Աղձնեաց եւ Շամշագրամայ նահապետի Ապահունեաց որք առաքեալ հրեշտակու-

1 Խոր. Բ. Գլ. ԻԶ. ԼԱ։
2 Զոր հռովմայեցիք իմն անուանեն թագաւորաց երկրին Աբգար կամ Ակբար Թագ կոչեն Տակիտ. ԺԲ. Գլ. 12 եւ 14։
3 Տես ի խոնարհ էջ 106։
4 Խոր Բ. Գլ. ԼԴ — ԼԷ։

Իսկ հակառակ զօրութեանն Արեաց՝ զթիկունս իւր հաստ առնէր Երուանդ ի Հռոմայեցիս, հրաժարէր նա ի թագաւորութենէն Ուռհայեցւոց, եւ փոխէր զաթոռն ի Հայս ի հին քաղաքն թագաւորանիստ յԱրմաւիր։

Այնուհետեւ ամրութեան եւ զգուշութեան ուշ ունէր թագաւորն, մինչ իսկ եւ հանապազ ահիւ դաւաճանութեան կամ մօտալուտ պատերազմին տագնապեալ։ Հայեցեալ յանպատսպարան հնութիւն Արմաւրայ եւ զի հեռացեալ էր գետն ի քաղաքէ անտի՝ շինէր զԵրուանդաշատ (զՔաղաքն Երուանդայ) յեցեալ ի բլուր որձաքարեայ, ամրացեալ առաջի՝ Երասխ գետով, եւ միջնաբերդ ի միջի բարձրապարիսպ՝ դրօք պղնձեօք, ելանելեօք երկաթեօք որոգայթաւորօք՝ երկդիմի, մի՝ վասն սպասաւորաց արքունի ի տուընջեան, եւ միւս՝ վասն դաւաճանաց գիշերոյ։ Փոխէր անդր զամենայն սպաս թագաւորութեանն բաց ի կռոցն. զի վասն նոցա զհիւսիսով 40 ասպարիզաւ հեռի յԵրուանդաշատայ ի վերայ Ախուրեան գետոյ կազմէր քաղաք՝ զԲագարան, զի մի ի խռնել բազմութեան վասն զոհից ի քաղաքն արքունական՝ զերծ իմն իցէ պահպանութիւն քաղաքին. կացուցանէր քրմապետ զեղբայր իւր Երուազ։ Մրցէր ընդ արքունական քաղաքին՝ գեղեցկութեամբն եւ դաստակերտն նորա Երուանդակերտ հանդերձ անտառաւն Ծննդոց՝ որմապատ արգելոցօք որսոյ երէոց թագաւորին[1]։

Այսպէս զամենայն անցս պատմութեան ի Միջագետս իմն ամփոփեալ՝ համառօտիւք կարճառօտս վճարէ զամենայն Մովսէս Խորենացի. սակայն այլ իմն պատմութիւնք առաւել եւս մանրամասնք առաջի կան պատմել վասն բուն Հայոց աշխարհին։

## Գ.

### Բուն Հայաստան (եւ Պարթեւաստան) առ կայսերօք կեսարեան տանն (ըստ օտարին պատմագրաց)։

Արտաշէս (Բ.), Տիգրան (Բ.), Տիգրան (Գ.) կրսեր, Արիոբարզան, Արտաւազդ (Բ.) Տիգրան (Դ.), Ոնոն, Արշակ (Բ.), Ռադամիզդ, Տրդատ (Ա.) (34 նախ քան Քր. — մինչեւ 80 յետ Քր.)։

## 20

Ա. Առ Յունացն պատմագրաց թէպէտ եւ յետնոց ժամանակաւ՝ չգոն զՀայոց ինչ պատմութեանց յիշատակք վասն ժամանակաց Ասորեստանեաց եւ Բաբելացւոց պետութեանն (ցամս իբրեւ 550), զի եւ ոչ յիշելոյ իսկ արժանի են զրոյցքն թէ յԱրմենիոսէ ումեմնէ յԱրգիական նաւորդացն սերեալ իցեն Հայք[2], եւ ոչ մեծ ինչ է բան Դիոդորի Սիկեղացւոյ զԲարզանեայ ումեմնէ Հայոց արքայէ որ առ Նինոսիւ.

1 Խոր. Բ. Գլ. ԼԶ—ԽԳ։

2 Ստրաբ. ԺԱ։

Արտաշիսի Բ. յԱրտաշատ՝ հանելով յԾովուանդաշտանէ, ուր ապրեալ էր զնոսա Երուանդ խախտեալ յԱրմաւրայ, յորում նստոյց զնոսա Տիգրան[1]։ 6. Ծանօթ է դարձեալ փաւստոսեայ Բուզանդայ՝ քաղաքաւթիւն Թադէի եւ Բարթուղիմեայ[2], եւ դարձեալ՝ 7. Թագաւոր ոմն Արշակունի (ըստ Խորենացւոյն՝ Աբգար) շինէ (այս ինքն նորոգէ) Ուռհայ քաղաքի[3], որով ապաքէն միաբանէ ընդ Խորենացւոյն դնել զԹագաւորան Հայոց Թագաւորեալ առ ժամանակ մի ի Միջագետս. եւ 8. Սանատրուկ ոմն արքայ շինէ Մծուրս քաղաքի ի բուն Հայս առ Եփրատ գետով[4], ապաւէլարան[5], առաւելն շիրմի նորա սկսեալ որոց հաստատչենան ընդ շիրիմս այլոց նոցին Թագաւորաց ի բերդն Անի[6]։ 9. Նշանաւոր իմն է եւ գործ Հայ Թարգմանչի երրորդ անկանոնական գրոցն Մակաբայեցւոց՝ (յառաջինում կէս հինգերորդ դարու) որ զ[illegible] արքայ Ասորեստանեայց՝ կոչէ Սանատրուկ իբրեւ առ հմայիցն իմն անուանի[7]։ 10. Զամին Թագաւորէ եւ զնորին դամբարէ զԱնդխուայ վկայէ ինքնին Խորենացի յառաջ քան զինքն յայլմէ ուրեք ի հայոյ պատմեալ[8]։ 11. Վասն Արտաւազդայ Բ. Նշանաւոր են բանք մեծին Եզնկայ զի ասէ[9]. "Վիշապք... ոչ զոք ի նախարարացներոց եւ ի դիւցազանց ունին կապեալ առ իւրեանս կենդանի.., մոլորութիւնն դիւաց խաբեաց զդիւցազապաշտս Հայոց՝ եթէ զոմն Արտաւազդ անուն արգելեալ իցէ դիւաց, որ ցայժմ կենդանի կայ, եւ նա ելանելոց է եւ ունելոց զաշխարհս"․ որք անմնեւֆն հանդէպ են բանից Խորենացւոյն[10]։ 12. Նա եւ ինքն իսկ Խորենացի վկայէ թէ. "Առ մերով խոշ ժամանակաւ՝ բազումք ի դարբնաց, զհետ երթեալ առասպելին, յաւուր միաշաբաթւոջ երիցս կամ չորիցս բախեն զսալն, զի զօրասցին, ասեն, շղթայքն Արտաւազդայ"։ 13. Ծանօթ է դարձեալ Բուզանդայ՝ խաւրով արքայ Հայր Տրդատայ[11], եւ 14. թէ Մամիկոնեանք են եկք ի Ճենաց աշխարհէն, յետ գժտութեան իւրեանց ի մէջ Թագաւորեալ ցեղին նոցա[12]։ 15. Թող զծիշդ համեմատութիւն բագնեաց եւ մեհենից առ Ագաթանգեղեայ եւ Բուզանդայ յիշելոց, զորոց ընդարձակագոյնս պատմեալ Խորենացւոյն՝ միաբանէ ընդ նոսա ըստ անուանցն, թուոցն, եւ տեղեաց առաճարացն նոցա[13]։ Այս չէ ինչ ստեղծիչ պատմութեանցս ինքն Խորենացի։

Մնանք դիւրաւ իմն կարծեցին զերրացն դժուարութիւն այսպիսի ինչ օրինակաւ լուծանել։ 1. Վասն 100ամեայ պատմութեանն (34 նախ քան զՔր. — 70 յետ Քր.) որ մնանաւանդ առ Տակիտեայ պատմիչին՝ համարեցան դատանել իրացն ելս, երկուս թագաւորութիւնս դնելով ըստ երկուցն պատմութեանց եւ բաժանելով նոցա ինքնակամ սահմանս ի Հայոց աշխարհին միումն զՀիւսիսայինն (սահման դնելով ի հարաւոյ զԵրասխ գետ) եւ միւսումն զհարաւայինն. զառաջինն տալով Թագաւորացն իշխելոց ընդ Հռոմայեցւոց ճոխութեամբ, եւ զերկրորդն բուն օրինաւոր հարստութեան Թագաւորացն Հայոց Արշակունեաց, որպէս թէ ի Մծբնայ կամ յՈւռհայէ իշխիցեն եւ այնմ մասին Հայոց աշխարհին, մինչեւ հինգերորդ պայազատ այսր թագաւորութեան թողեալ զերկրնեան Ուռհայեցւոց՝ առեալ իցէ ընդ այնր ի Հռոմայեցւոց եւ զՀիւսիսայինն մասնն եւ այնպէս ի միութիւն դարձեալ Թագաւորութիւնն։ 2. Իսկ որ յետ այնորիկ

1 Խոր. Բ. Գլ. ԺԶ. եւ ԽԹ։
2 Բուզ. Դպր. Ա. Գլ. Ա. եւ այլուր ուրեք։
3 Դպր. Ե. Գլ. ԼԲ։ — Տես Խոր. Բ. Գլ. ԻԷ։
4 Դպր. Դ. Գլ. ԺԴ։
5 Դպր. Ա. Գլ. Ա։
6 Դպր. Դ. Գլ. ԻԴ։
7 Գ. Մակ. Զ. 4։
8 Բ. Գլ. ԼԴ։
9 Ա. էջ 104—5։
10 Բ. Գլ. ԿԱ։
11 Բուզ. Դպր. Ա. Գլ. Գ։
12 Բուզ. Դպր. Ե. Գլ. Դ. եւ ԼԷ. երկիցս։
13 Տես յԱ. Հատ. էջ 163—165։

ուրեք ուրեք պատմութիւն առ արտաքնոյն մատենագրաց զՀայոց կողմէ՝ չառեն յանձն զայնր ստուգութիւնն:

Այլ նախ կամայական իմն եւ անհնարին մտացածին է եւ Հակառակ իսկ դրից երկրին՝ այն բաժանումն աշխարհին. ոչ ճանաչէ ինչ այնպիսի Խորենացին, եւ ոչ ընթացք պատմութեանն նորա առնուն զայն յանձն, այլ նմին Հակառակ՝ (որպէս վաղ նշմարեցաք) յայտնի իսկ դնէ պատմագիրն առհմայքն զկողմանսն զայնոսիկ ընդ իշխանութեամբ իւրոյ միոյ միայնոյ թագաւորի արշակունւոյ, զոր նստուցանէ նա ի Հարեւր ամեն յայնասիկ կամ ի Մծբին եւ կամ յՈւռհայ, եւ պատմէ տալ Հարկս յամենայն կողմանց Հայոց աշխարհին[1], եւ առաջնորդել Համօրէն երկրին ի ձեռն վերակացուի[2], եւ զնախարարսն ոչ միայն Արծրունեաց[3], Գնթունեաց[4], Աղձնեաց եւ Աղահունեաց[5] (բնակելոց առ ստորոտս Մասեաց) եւ զԲագրատունեաց դայեկաց արքայորդւոցն՝ որոց եւ երկիր կալուածոց էր անդր քան զՃորոխ գետ[6], դնէ ընդ Հրամանաւ նոցին թագաւորաց, այլ եւ յանուանէ յիշէ զՀիւսիսային ամուրսն զԱնի բերդ, զՍպեր եւ Բայբերդ իսկ եւ ի ձեռս թագաւորացն այնոցիկ[7]: Դարձեալ՝ եւ Համայեցւոցն պատմագիրք չհատանեն նոքին անձուկ սահմանօք որ թագաւորացն նոցա յիշելոց ընծայիցին, այնպէս զի ամենայն իսկ բան Հայաստան Հանդերձ ամուր ամուր տեղեօք (յորս յանուանէ յիշին ի նեզնոց Հարաւային կողմանց՝ կողմանք Արծանւոյ, Արտագերք, Տիգրանակերտ) է առաջարկել պատերազմացն որ առ Տակիտեայ պատմին, եւ Պղինեա իսկ եւ Ստրաբոն որ մօտ ի նոյն ժամանակս զՀայաստան աշխարհ սահմանեն՝ չգիտեն այնպիսի անձուկ եզերս կամ բաժանումն: Արդ յայտ իմն է թէ այսպիսի բաժանմամբ ոչ զարտաքին պատմագրացն կարեմք զմիտս Հասանել եւ ոչ զմերոցն:

Իսկ զպատմութեանցն որ յետ այնց ժամանակաց ուստեք ուստեք պատմիցին՝ ուրանալ զստուգութիւնն եւ չընդունել գոնեայ զմեծ ինչ մասն նոցա որք յիշատակարանօքն եւս ունիցին Հաստատութիւն՝ չէ արդեւք գործ բանագատական Հանճարոյ:

Ապա յիրաւի էր մեզ ոչ զմի պատմագրութիւն միւսումն պատմագրութեան զոհել, եւ ոչ առաժամ խառնմամբ զերկոսին ի մի ձուլել բանագրօսելով եւ զերկոսին միանգամայն պղպղելով, այլ պղուլ բախտաւորագոյն ժամանակի եւ աջողագոյն մտաց զերան թողուլ, եւ այնպէս յետ կարգելոյ զտոհմային պատմագրութիւնն[8]՝ մատչել առ եւ ի միւսոյ կողմանէ ուրոյն պատմութիւն:

## 21

Բուն Հայոց աշխարհ անկեալ կայր յարեւելից եւ յարեւմտից կուսէ ի մէջ երկոցունց պետութեանց ընդ միմեանս ի վէճ եկելոց՝ իբրեւ թումբ եւ ամբարտակ ի մէջ նոցա, եւ ինքն իսկ Հայաստան որպէս դիրք երկրին նոյնպէս եւ խորհրդով մարդկանն մերթ ի սոցա եւ մերթ ի նոցա կողմն կռթեալ ծփէր[9]: Ուստի եւ բնակու-

1 Բ. Գլ. ԻԶ. եւ ԼԷ:
2 Բ. Գլ. ԻԳ. ի վերջ կոյս:
3 Բ. Գլ. ԺԶ:
4 Բ. Գլ. ԻԴ:
5 Բ. Գլ. Լ:
6 Բ. Գլ. ԼԶ:
7 Բ. Գլ. ԼԷ. եւ ԼԸ:
8 Վերագոյն էջ 44—87:
9 Նշանաւոր յոյժ են բանք Տակիտեայ զՀայոց. Բ. Գլ. ԾԶ. «Երկահակ իմն է ազգն այն ի վաղուց՝ ըստ մարդկանն խորհրդոց եւ ըստ երկրին դրից»: — Ambigua gens ea antiquitus, hominum ingeniis et situ terrarum.

Նոյն դժուարութիւնք որ յանորոշութենէ սորա ծնանէին, սատրապք ինքնագլուխք, թագաւորք ընդ իշխանութեամբ թագաւորին մեծի՝ որպէս ի Մարաստանի, ի Պարսկաստանի, յԵղիմայիս, ի Քարաքս՝ որ ակամայ իմն հնազանդէին, որպէս եւ յունական-մակեդոնական գաղթականաց քաղաքք որոց մեծամեծ ազատութիւնք էին եւ առանձին օրինակ առաջնորդութեան եւ նման իմն յԱսորիս եւ ի Հռոմ կայր, բազմութիւն ազգաց եւ ցեղից օտարացելոց ի միմեանց բարուք, լեզուաւ եւ պաշտամամբք, հեռաւորութիւն արքունեաց թագաւորին (ի Ռագէս, յԷկբատանս եւ ի Տիզբոն՝ ըստ այլ եւ այլ ժամանակաց տարւոյ), այս ամենայն շփոթեալ խառնակէր զերս առաջնորդութեան եւ տկարացուցանէր սակաւ, եւ ապա միւս Հռոմայեցւոց ճնշումն ի վերայ նոցա, եւ յետոյ Պարսից՝ յափշտակել ի նոցանէ զիշխանութեանն գլխաւորութիւն:

Կարգ Պարթեւացն թագաւորաց որոց մի ըստ միոջէ իշխեցին պատմելոց՝ է այսպիսի ինչ ըստ յոյն եւ հռոմայեցի մատենագրաց: Յետ Արշակայ ԺԵ. այս ինքն՝ Հրահատայ կամ Փրահատայ Դ. (յամէ 37 — 1, ըստ այլոց 4 նախ քան զՔր.) պայազատեսին կարգաւ Արշակ ԺԶ. կամ Հրահատակ (1—2, ըստ այլոց 4 յետ Քր.), Արշակ ԺԷ. Որոդէս Բ. (2—4), Արշակ ԺԸ. Վոնոն Ա. (4—14), Արշակ ԺԹ. Արտաւան Գ. (14—՝ Արշակ Ի. Վարդան եւ Արշակ ԻԱ. Գոտարզ զինեամբք եղանէին, բայց Վարդան դեռ եւս թագաւորէ յամի Քր. 41, ըստ Սելեւկեան թուականութեան դահեկանաց՝ 354), Արշակ ԻԱ. Գոտարզ (թագաւորէ յամի 47 յետ Քր.) Արշակ ԻԲ. Վոնոն Բ. (50—51), Արշակ ԻԳ. Վաղագեսէս կամ Վաղարշ Ա. (51—91), Արշակ ԻԴ. Բակուր (91—107), Արշակ ԻԵ. Խոսրով (107—121), Արշակ ԻԶ. Վաղագեսէս կամ Վաղարշ Բ. (121—149, կամ ըստ Սելեւկեան թուականութեան դահեկանաց նորա՝ 433—460), Արշակ ԻԷ. Վաղագեսէս կամ Վաղարշ Գ. (149—191, կամ ըստ Սելեւկեան թուականութեան դահեկանաց նորա՝ 461—502), Արշակ ԻԸ. Վաղագեսէս կամ Վաղարշ Դ. (191—208), Արշակ ԻԹ. Վաղագեսէս կամ Վաղարշ Ե. (208—220, կամ ըստ Սելեւկեան թուականութեան դահեկանաց նորա՝ 520—530), Արշակ Լ. Արտաւան Դ. (որպէս հաւանութեան թուի՝ միահեծան յամէ 220—226): [Զվերջին պայազատս Արշակունեաց ոմանք դնեն այսպէս Արշակ ԻԸ. Արտաւան (193—199), Արշակ ԻԹ. Բակուր Բ. (199—209), Արշակ Լ. Վաղարշ Դ. (209—216), Արշակ ԼԱ. Արտաւան Դ. (216—226), այլ առաջին կարգն եւ ժամանակագրութիւն առաւել ըստ դահեկանաց է[1]]:

1 Դահեկանք Պարթեւացն թագաւորաց անուանեն զամենայն իսկ թագաւորսն հասարակաց իմն անուամբ Արշակ, յանուն Արշակայ առաջնոյ. բայց ուրեք ուրեք զմասնաւոր իսկ անուանսն թագաւորացն յաւելուն հանդերձ պատմագրացն՝ որպէս զԱնոնին՝ Βασιλευς Ονωνης νικησας Αρταβανον, զԳոտարզէսին՝ Γοταρζης βασιλευς. Չէ անծանօթ եւ յետին արաբացի պատմագրաց որ զկարգ թագաւորացն Պարթեւաց խառն ի խուռն եւ այլ եւ այլ անուամբք գրեն՝ Գոտարզն անուն, զոր Թարիխն բեն Ադամ՝ կոչէ Գուտարզիզ կամ Գոտարզիզ: ԶԱրտաւանայ՝ Αρσακου του καλουμενου Αρταβανου. ԶԲակուրայն Αρσακου Πακορου, զՎաղարշուն Բ. βασιλεως βασιλεων Ολαγα(σου) կամ Ολασου կամ Βολαγασου — Իսկ Մովսէս Խորենացի ի համարին իսկ պայազատութեան Պարթեւացն Արշակունեաց չէ միաբան ընդ Յունացն եւ Հռոմայեցւոց պատմագրաց (Յովսեպոսի, Յուստինեայ, Տակիտեայ եւ այլոց բազմաց ժամանակակցաց), զի փոխանակ 30 պայազատաց 14 եւեթ դնէ կամ որպէս Ուիհաւէր գերմանացի առէ՝ ամփոփէ, այլակերպ իմն ժամանակագրութեամբ եւ անուամբք, միայն զերկուս կամ զերիս զվերջին թագաւորսն նովին միաբան անուամբ ընդ Յունաց եւ Հռոմայեցւոց պատմագրացն անուանէ, այս ինքն՝ զԱրտաւան, զՎաղարշ, զՎաղեգեսոս (Խոր. Բ. ԿԴ. որպէս նախ քան զնա Ագաթ. յիշէ զԱրտաւան): Եթէ սկսանիցիմք համարել ի վեր կոյս յամէ մահուան վերջնոյ թագաւորին Պարթեւաց

## 22

Յորժամ Պոմպէոսն յետ Լուկուղղայ՝ երկրորդ անգամ հարկանէր զՄիհրդատ Զ. զՄեծն զարքայ Պոնտացւոց եւ յե-ղանել նորա փախստեայ նախ ընդ Եփրատ եւ ապա ընդ Կաւկաս անդր ի Խերսոնեսոս Տաւրիացւոց (65)՝ մտանէր նա զհետ նորա մինչեւ յԱրտաշատ, առնոյր ի միտ զօրավարն թէ չէ ինչ դիւրին պահել նուաճեալ զաշխարհ Հայոց Մեծաց եւ ոչ օգուտ ինչ այն Հռոմայեցւոց. նմին իրի իսկ թող նա այնպէս իբրեւ առան-ձինն թագաւորութիւն ի ձեռս Տիգրանայ հարկացն խոստմամբ։ Այլ Փոքր Հայք որպէս եւ Կիլիկիա, Փիւնիկաստան, Ասորիք եւ մասն մի Միջագետաց հանեան ի վերագոյն իշխանութենէ նորա։ Այսպէս եւ Արտաւազդ նորին որդի եւ պայազատ (կամ աթոռա-կից հօրն յառաջ քան զամս 50[1]) էր խաղաղութեամբ ընդ Հռո-մայեցւոց, մինչեւ յետուստ առ Անտոնեաւ զարթեաւ գրգռութիւնն։

Վաղնջէ յառաջնում ամի արքայութեանն Հրահատայ Դ. արքայի Պարթեւաց (37—1 նախ քան զՔր.) գայր հասանէր Անտոնիոս (երկրորդ անգամ) ի կողմանց Խաղդեայց յարեւելս՝ անձամբ վարել յառաջ զպատերազմն զոր մղէին ցայն վայր զօրա-վարք նորա Լաբիէնոս եւ Վենտիդիոս, մանաւանդ զմտաւ ա-ծեալ այնու դիւրագոյն զերան վճարել, զի զՄանէճ զոմն նախա-րար ի Պարթեւաց հատուած առ իւր ունէր, եւ ինքն Հրահատ զեղբայրն կոտորեալ էր ի սուր սուսերի (37 նախ քան զՔր.)։ Խաղայր այնուհետեւ Անտոնիոս բազմամբոխ լեգէոնօք ընդ Հայ-աստան իբրեւ ընդ երկիր բարեկամաց ժողովրդեանն Հռոմայեցւոց անկանել յաշխարհն Պարթեւաց, եւ յարգել արկեալ պաշարէր զՊրաասպ կամ Փրաասպ քաղաք Ատրպատականի, եւ անդուստ զօրավար նորա Ոպպիոս Ստատիանոս դիմէր մերձամուխ ի Մարաս-տան (36)[2]։ Յետ սակաւ ինչ միոյ իբրեւ նեղեալ տագնապէր Անտոնիոս առ վայրացն անտեղեկութեան՝ գուժկան հասանէր թէ եւ Ստատիանոս ի Մարաց անտի եւ ի Պարթեւաց վտանգեցաւ. վհատեցաւ զօրն հռոմայեցի, զանգիտել սկսաւ Անտոնիոս գուցէ Կրասսեայ անցք եւ ընդ նա անցանիցեն, տագնապաւ եւ մեծաւ զօրացն ծախմամբ դառնայր ընդ Հայս առանց ձմերելոյ եւ հազիւ հասանէր սակաւաւորօք յերկիր սահմանացն Հռոմայեցւոց, եւ

որ է 226 յետ Քր. զամսն զոր տայ Խո-րենացի փոյթ փոյթ ի թագաւորաց ան-տի չարչարանօք, եւ այսպիսի ինչ կարգ եւ ժամանակ պայազատութեան։ Արշակ Ա. Քաջ (229—198 նախ քան զՔր.), Արտաշէս Ա. (198—172), Արշակ Բ. Մեծ (172—119), Արշականն (119—89), Արշամակ (89—58), Արշէզ (58—38), Արշաւիր (38—8 յետ. Քր.)։ Թէ որպէս Ցուցոց եւ Հռոմայեցւոց պատմագրաց ցայս անդր ժա-մանակագրերն՝ տես Հաս. Ա. էջ 501։ Ըստ Արշակայ (որ հանդէսական Հրահա-տայ Դ.) զնէ Խորենացի ... Արտաշէս Բ. (8—42 յետ Քր.), Դարեհ (42—72), Արշակ Գ. (72—91), Արտաշէս Գ. (91—111), Պերոզ որ եւ Վաղերգէսոս (111—145), Վաղարշ (145—195), Արտաւան (195—226)։

1 Քանզի Կիկերոն՝ որ ի նմին ամի պրե-տոր ի Կիլիկիա էր՝ յիշատակէ զԱրտաւազդ արքայ Հայոց։

2 Ցանէ տառն է դահեկանն Անտոնեայ յորոյ երկրորդումն կողմն կայ՝ խոյր Հայոց կամ Մարաց թագաւորաց եւ աղեղն եւ նետ։

զամենայն զնոսա գործոյն զայն յԱրտաւազդ արքայ Հայոց կրթէր՝ թէ ոչ ի դէպ ժամուն հաս ի թիկունս հայրագունդ զօրօք, որպէս հրամանն տուեալ էր[1]:

Զառաջինն հնարս հնարէր Անտոնիոս հրապուրել հանել զնա միանգամ յերկրէ անտի իւրմէ, ապա գեղեցիկ գեղեցիկ խոստումն առաջի արկանէր՝ զդուստր մի զիւր ի Կղէոպատրայ տալ հարսնութեան անդրանկորդւոյն Հայոց կամ զդուստր նորա առնուլ կնութեան որդւոյ իւրում Աղեքսանդրի ծնելոյ նոյնպէս ի Կղէոպատրայ: Յետոյ մտեալ բռնութեամբ յերկիր սահմանացն Հայոց՝ մերթ հրեշտակութեամբ մերթ բարեկամաց թագաւորացն թելադրութեամբ եւ մերթ ահիւ հաւանեցոյց զարքայն Հայոց գալ ի բանակն: Անդ կալաւ զնա ձերբակալ, արկ ի շղթայս ոսկիս[2] կամ յարծաթիս[3] եւ յետ աղքով եւ սաստիւ նուաճելոյ զաշխարհն՝ ած տարաւ զթագաւորն եւ զամենայն տուն նորա ի քաղաքն Աղեքսանդրիացւոց՝ պարգեւ Կղէոպատրայ: Պտղոմէոս Փիլադելփոս որդի Կղէոպատրայ առ զթագաւորութիւն Փիւնիկաստանի, Կիլիկիոյ եւ Ասորւոց, եւ միւս եւս որդի նորա Կեսարիոն ծնեալ ի Յուլեայ Կեսարէ կարգեցաւ բարձակից մօրն՝ դշխոյն Եգիպտացւոց, Լիբիացւոց, Կիպրացւոց եւ Խոր Ասորւոց. իսկ զՀայաստան եւս Անտոնիոս սահման թագաւորութեան որդւոյ իւրում ի Կղէոպատրայ՝ մանկանն Աղեքսանդրի, որում եւ սահմանեցաւ Յովտապէ դուստր թագաւորին Մարաց՝ կնութեան, քանզի հաշտեցաւ նա ընդ սմա դաշամբք նիզակակցութեան ընդդէմ Օկտաւիանեայ եւ նմա արար յանձն զպահպանութիւն Հայոց աշխարհին (34)[4]:

Իսկ յառաջագոյն իսկ մինչ չեւ տուեալ ձեռս բերդակալ զօրուն յԱնտոնիոս՝ ընտրեցին նոքա ի թագաւորութիւն զորդին Արտաւազդայ զանդրանիկ զԱրտաքսիաս կամ զԱրտաշէս որ պրծեալ ապրեալ էր ի ձեռաց Հռոմայեցւոցն (34): Թէպէտ եւ անդէն Արտաքսիաս Անտոնեայ եւ ել յաշխարհէն ի բաց, այլ երթեալ անկեալ առ Հրահատ Դ. միաբան ընդ նմա՝ տայր մարտ պատերազմի ընդ արքային Մարաց: Զառաջինն սա զօրանայր ի վերայ նոցա (33) եւ ապա հարկանէր խորտակէր զնա Արտաքսիաս, եւ առնոյր զթագաւորութիւն հարցն իւրոց ի բուռն (32), քանզի չհասին եւս արքային Մարաց թիկունք օգնականութեան յԱնտոնեայ՝ որ զպատերազմաւ ուրեմն էր ընդ Օկտաւիանեայ (Օգոստեայ)[5]: Իսկ եւ յետ այնորիկ Անտոնիոս ի միջոյ

1 Համառօտ. Լիւեայ Դպր. ճԼ:
2 Վելլ. Պատերկ. Բ. 82:
3 Դիոն. Կաս. Խթ. ի վերջ [illegible]:
4 Կայ դահեկան Անտոնեայ արծաթի եւ ոսկի դրոշմեալ [illegible] (յամի 34), ի միում կողմանն դրոշմեալ Անտոնիոս, Հայաստան ի [illegible] (Armenia devicta). եւ [illegible] Անտոնեայ եւ [illegible] Հայոց թագաւորին. եւ ի միւսում կողմանն [illegible] Կղէոպատրայ եւ գիր [illegible] [illegible] թագաւորաց, [illegible] թագաւորաց:
5 Յով. Բ. Դղ. Գ. 3, 4: Յակոբ. [illegible]. [illegible]. 5: Դիոն Կաս. [illegible]:

բարձաւ պարտեալ՝ Ոկտաւիան զորդին Արտաւազդայ, զեղբայրն Արտաշեսի՝ յԱղեքսանդրիայ ի Հռոմ փոխէր, եւ ի գալ իւրում յարեւելս (30—29) չունէր ինչ պատճառս գոռալոյ ընդ Արտաշեսի, քանզի սա ոչ միայն օգնական չէր Անտոնեայ՝ թշնամւոյ նորա, այլ եւ թշնամի եւս։ Բայց քանզի Արտաշեսս առ հասարակ իսկ առ Հռոմայեցիսն ունէր ոխութիւն սաստիկ վասն հօրն տարապարտուց մահուան[1], եւ յետ սակաւ ինչ միոյ յերկուս իմն բաժանեալ Հայոց՝ կէսք Հռոմայեցւոց եւ կէսք Պարթեւաց կողմանն ածէին թէկն, իբրեւ զօրացան առաջինքն՝ նենգ գործեալ սպանին զարքայ (21)[2]։ Իսկ եւ իսկ առաքեցին նախարարքն ի Հռոմ առ կայսր խնդրել թագաւոր ի պատանեկաց անտի Արտաւազդայ, զեղբայր Արտաշեսի՝ Տիգրան անուն։ Հրամանէր Օգոստոս եւ գործ ի ձեռն տայր այնուհետեւ Տիբերեայ իւրում որդեգրի, եւ սա անդէն եկեալ մտեալ միջամուխ ի Հայաստան հռոմէական լեգէոնօք՝ նուաճէր զկողմանսն ընդ ձեռամբ, եւ Տիգրանայ՝ զոր ընդ իւրն ածեալ էր, կապէր թագ յանդիման նախարարացն ի բեմի (20, յառաջ քան զՅունիսս ամիս)[3]։

1 Տակ. Բ. Գլ. Գ. 4։
2 Տակ. անդ։ Դիոն ԾԴ։
3 Տակ. անդ։ Սուետոն յՕկտաւ. ԻԱ. ի Տիբեր. Թ։ Վեղղ. Բ. 94. եւ Բ. 122։ Դիոն անդ։ Փղոր. Գ. 12։ Ակրոս. Յուսեփ. ԺԲ։ Եւտրոպ. Է. 5։ Ովրատ. Թուղթք, Դիրք Ա. Թղթ 12. տող 26.

Զի մի՛ անգէտ այնմ իցես
Թէ Հռոմայոց իրք ո՛րպէս.
Կանտաբրացին, լուր դու զայս,
ԹԱգրիպպայ ձեռն է յորդայս,
Իսկ Հայն՝ Կղաւդեայ Ներոնեայ
Գոռ զօրութեամբն անկեալ կայ։

Զնոյն ակնարկէ եւ Վիրգիլիոս (Ենեակ. Ը. ի վերջ կոյս) յորժամ յօրինէ զնկարագիր վահանին զոր ետ, ասէ, Ենեայ՝ Աստղիկ ի գործոցն Հեփեստեայ, յորոյ վերայ նկարեալ կային գործք եւ արութիւնք որդւոց եւ թոռանց Ենեայ. ընդ այլսն նուաճեալս մի ըստ միոջէ վիպին նկարեալ անդ եւ Դահք աննուաճելիք եւ Երասխ զայրացեալ եւ կամարիչ կամրջաց (pontem indignatus Araxes), այս ինքն՝ Հայք անձնակառոյք ծառայութեան Հռոմայեցւոց։

Դիպող յոյժ ի հնախօսութիւն պատմութեանս եւ անգին իմն յիշատակարանք վասն անցից Հայոց աշխարհին են դահեկանքն գեղեցիկք որ ի մուտարանս Եւրոպայ կան, ոսկի եւ արծաթի, ամենեքին դրոշմեալ ի սմին ամի (20 նախ քան զՔր.)։ Ի միում կողմանն նոցա է միշտ գլուխ Օգոստեայ կամ միոյ ուրուք ի դից (Փերոնիայ, Բակքոսի), իսկ ի միւսում կողմանն կայ արձանագիր, երբեմն՝ Հայաստան առեալ (Armenia capta) եւ պատկեր՝ խոյր Հայոց թագաւորին եւ առ նմին՝ մի կամ երկու կապարճք գեղեցիկք եւ աղեղն. երբեմն նոյնպէս՝ Հայաստան առեալ, եւ պատկեր ինչ այլոյն՝ զի Դիկն յաղթութեան թեւաւոր երանս ածեալ ի վերայ ցլու սանձէ զնա, որով ակնարկէ նուաճումն Հայոց աշխարհին յայնկոյս Տաւրոսի (որ թարգմանի՝ ցուլ) եւ առանձինն Տարաւն նահանգի Հայոց՝ զոր կոչէին Հռոմայեցիք Taurantium կամ Taurauntium; մանաւանդ զի ըստ Պլինեայ իսկ վկայելոյ՝ նշանակ Տաւրոս լերին էր ցուլ ինչ այլենձի յարեւելս. երբեմն նոյնպէս՝ Հայաստան առեալ եւ պատկեր՝ Սփինքս մի կծկեալ նստեալ, եւ պատմեն իսկ Պլինիոս, Սուետոն եւ Դիոն՝ իսկզբանն վարել Օգոստեայ սփինքսագիր մատանեաւ ի կնիքս իւր. եւ երբեմն դարձեալ՝ այսպիսի ինչ արձանագիր՝ Հայաստան անդրէն առեալ (Armenia recepta), Սքանչելեայն Կեսարեայ որդի, եւ պատկեր՝ կին մի (նշանակ Հայաստան աշխարհի) ի ծնունգս։ Առաջինն եւ չորրորդն ի դահեկանաց աստի արծաթիք են, իսկ երկրորդն եւ երրորդ՝ ոսկիք։ Թող զերկուսին արծաթի դահեկանսն զոր այլքն երեքին վերակացուք կայսերական դրամահատութեան հատեալ են ի պատիւ Օգոստեայ. ի միումն ի նոցանէ երեւեցուցանի Հայաստան՝ իբրեւ կին անկեալ ի գուճս, խոյր Հայոց թագաւորին ի գլուխ իւր, եւ արձանագիր շուրջանակի՝ Սքանչելեայն Կեսարեայ որդի, Հայաստան առեալ. եւ յայլումն երկոսին նոյնպէս Հայաստան ի կերպարանս կնոջ խոնարհելոյ ի ծունր՝ կարկառեալ առաջի զձեռսն իբրեւ թէ զամենայն աւանդիցէ ի ձեռս յաղթողին։ Զսոյն իմն եւ բանիւք նկարէ Ովիդիոս ի Պոնտոսէ (ի Տրտմականսն Ծ. 227) յասելն "Արդ խնդրէ Հայն խաղաղութիւն, արդ կարկառեալ մատուցանէ զաղեղնն,,։ Կայ միւս եւս դահեկան արծաթի ի միում մուտարանի դժուարագիւտ յոյժ ի սմին ամի (20 նախ քան զՔր.) քանզի է նշանակեալ ի նմա իններորդ նուագն Զօրավարութեանն Օգոստեայ, այս ինքն՝ imp. VIIII. եւ ոչ

Այլ չկերկարէր Տիգրան ի թագաւորութեանն եւ ոչ որդի նորա Տիգրան Կրսեր ընդ քեռն իւրում Երատոյ՝ զորս միաբանեալ էր հայրն ընդ միմեանս ի բարձակցութիւն թագաւորութեան եւ ի կցորդութիւն ամուսնութեան ըստ չարաչար սովորութեան ժամանակացն[1]: Բայց որպէս հաւանութեան թուի՝ քանզի հակէին իմն նոքա ի կողմն Պարթեւաց, առաքէր Աւգոստոս միւսանգամ զՏիբեր (յամի 6) յարեւելս, սակայն նա մեկնեցաւ ի Հռոդոս զայրացեալ ընդ հօրուն՝ վասն նախամեծար իմն զթոռունսն (զԳայիոս Կեսար եւ զԼուկիոս Կեսար) քան զինքն առնելոյ[2], եւ առաքէր զինուորական դեսպանս որ հրամանաւ կայսեր անցին կացուցին յաթոռ թագաւորութեան Հայոց զԱրտաւազդ զոմն անուն[3]: Այլ Տիգրանայ գտեալ օգնականութիւն ի Պարթեւաց անտի՝ եկն կալաւ միւսանգամ զաշխարհն, մերժեալ անտի զԱրտաւազդ մեծաւ կոտորածիւ իսկ Հռոմայեցւոցն (2 նախ քան զՔր.): Յետուստ հարկ համարէր Աւգոստոս առնուլ առաքել զիւր միւս եւս որդեգիր զԳայիոս (զորդի Ագրիպպայ) զօրօք՝ նուաճել զերկիրն ապստամբեցեալ: Այն ինչ հասեալ Գայեայ յԱսորիս՝ ձեռնթափ լինէր Հրահատակ արքայ Արեաց (1 յետ Քր.) եւ Տիգրան անկեալ էր վաղ ի ճակատու ուրեք ընդ ազգաց դրացեաց զոր յարուցեալ էին ի վերայ նորա Հռոմայեցիքն եւ Երատոյ հրաժարեալ առ ժամն: Այսպէս եկեալ մտեալ Գայիոս յերկիր սահմանացն Հայոց զառաջինն յաջողութեամբ հանէր զիրսն ի գլուխ, եւ ըստ Հայոց իսկ խնդրելոյ՝ զԱրիոբարզան զոմն զորդի Արտաւազդայ արքայի Մարաց մատուցանէր ի թագաւորութիւն, որ էր այր շքեղ տեսլեամբ եւ քաջասիրտ (1 յետ Քր.): Այլ ի յաջորդ ամին (2 յետ Քր.) զրգռեցաւ մասն մի Հայոց ի մարտ պատերազմի, եւ ինքն Գայիոս առ ամրոցաւն Արտագերից յորժամ մօտագոյնս մատուցեալ խօսէր ընդ ամրականսն՝ առ վէրս յԱդդուայ կամ յԱդդոնէ ումեմնէ սրով: Պնդեցին այնուհետեւ Հռոմայեցիք զպաշարումն եւ եղեն ընդ երկար

VIII. որպէս ընթերցեալ իմն է Միոնէ ի վերայ օրինակի իրիք նորին դահեկանի դըտելոյ ի մատենադարանին Կոալենի ուրումն ի Գաղիա). ի միում կողմանն է գլուխ Աւգոստեայ, եւ ի միւսումն՝ զինուոր Հայ կանգուն՝ նիզակ յաջումն եւ աղեղն ի ձախում՝ յեցուցեալ ի գետին, հայացի հանդերձիւ (կամ զրահիւք) եւ գլխանոցաւ, եւ գիր շուրջանակի՝ Caesar div. f., Armenia capta.

1 Տակ. Բ. Գլ. Գ. 5: Դիոն. ԾԵ. 11: Եւ կայ սոցին երաշխաւոր դահեկան պղընձի ունելով ի միում կողմանն զպատկեր այսր Տիգրանայ թագ. Հայոց ի գլուխ եւ գիր շուրջանակի Βασιλευς βασιλεων Τιγρανης (արքայ արքայից Տիգրանէս), եւ ի միւսումն կողման պատկեր Երատոյ եւ գիր շուրջանակի՝ Ερατω βασιλεως Τιγρανου αδελφη (Երատով Տիգրանայ արքայի քոյր): Կայ միւս եւս դահեկան նոյնպիսի եւ գիր շուրջանակի Βασιλευς μεγας νεος Τιγρανης (թագաւոր մեծ Կրսեր Տիգրանէս):

2 Տես վերագոյն էջ 47:

3 Յայտ իսկ հաւանութեան է թէ ոչ Արտաւազդայ Առաջնոյ՝ այլ այսմ իսկ Արտաւազդայ անկ է դահեկանն նկարագրեալ վերագոյն էջ 86, որպէս ցուցանէ նմանութիւն դրոշմին ընդ դրոշմ դահեկանին Տիգրանայ Կրսերոյ առաջին աթոռակալի նորա. քանզի ի դէպ է թէ ի միոջէ արուեստագիտէ իցեն երկաքին. մանաւանդ զի եւ անունն Արտաւազդայ է գրեալ առաւել ըստ հռոմայեցի հնչման Αρταυασδου եւ ոչ Αρταβαζου, որպէս գրէին արդեւք յայն արուեստագէտք գրամահատութեան, եթէ էր Արտաւազդն Ա. յաջորդ Տիգրանայ Մեծի՝ որոյ դահեկանացն եւ դրոշմն եւս այլ իմն նկարագիր ունի:

զինակալ ամրականք. բայց յետուստ եսուն ձեռս, եւ առ Գայիոս անուն Զօրավար եւ այնպէս խաղաղէր երկիրն։ Այլ ի դառնալ խորոմ ի Հռոմ ի Լիւկիա մեռանէր Գայիոս ի վէրացն զոր ի Հայս առ (4) [1]։

Արքայ Արիոբարզան չյերկարեալ ի կեանս՝ առնոյր զթագաւորութիւնն յԱւգոստեայ, եւ ծերակուտին հրամանաւ՝ նորին որդի Արտաւազդ, այլ չհաճեցան ընդ նա Հայք, թերեւս զի չէր արշակունի։ Նմին իրի առաքեաց յետ նորա Աւգոստոս յաթոռն զՏիգրան զոմն ի տոհմէ թագաւորացն Հայոց, (որպէս հաւանութեան թուի ի թուոց Արտաւազդայ Ա.) [2]։

Յետ սորա առ միւսանգամ դշխոյն Երատոյ զթագաւորութիւնն ի բուռն, բայց ձանձրացեալ ազգին ի նմանէ՝ զի անընդել իսկ ընդ կանացի առաջնորդութիւնն էր, եւ զնա մերժեցին ի թագաւորութենէն։ Այսպէս մնայր դատարկ աթոռն մինչեւ յեղափոխ փոփոխմունք դրացի աշխարհին Պարթեւաց ածին նոցա զոմն ի թագաւորութիւն։

1 Վելլէ. Պատերկուլ. Բ. Գլ. ՃԲ. 2. 4. որ ընդ Գայեայ իսկ եկն զինուորութեամբ ի Հայս։ Տակ. անդ. Դիոն՝ անդ։

2 Տակ. անդ. Դիոն Կաս. ԾԵ. 11 եւ մանաւանդ Հռովմէական իւղ նորին գրոց նորոգ գտեալ։ Յորում երախտաւոր եւ զգեթէ հարմարէն իսկ պատմութեանցս գեղեցիկ վկայ կայ անուանեալ Յիշատակարանն Անկիւրական, այս ինքն արձանագիր առաջին կոնդակին յԱնկիւրիա Գաղատացւոց ի պատիւ Աւգոստեայ (Σεβαστεία, Augustea), յորում կայ քանդակեալ մասն ինչ կտակին Աւգոստեայ զոր էր նորա յանձն արարեալ Վեստեան կուսանաց զի տացեն ծերակուտին (Տակիտ. Ա. Գլ. Ը.)։ Այս մասն կտակին էր գրոշմեալ ի Հռոմ յերկուս տախտակս պղնձիս (ըստ Սուետ.), եւ անտի անց օրինակն յԱնկիւրիա։ Ի սմին պատմէ Աւգոստոս հանդամանօք զերեւելի անցս կենացն եւ զգործս։ Առանձինն իմն զեկուցն որ ի Հայս գործեցան՝ ասէ. (Տախտակ Ե.)

... [Arme]niam. [ma]iorem interfecto. rege. ejus. Artax[ia. cu]m. posse[m. provinciam. facere.] ma[lui majorum nostrorum. exemplo. reg[nu]m. id. [ad Tigranem. Artavasdis. filium. nepotem. Tigranis. regis. per. [Tib.] N[e]ro[nem qui tu]m. e[rat. privignus meus. transferre. ea]n[de]m. gentem. postea. i[nsur]gentem. et. rebellantem. d[omitam.]per Caium. filium, meum. regi. Ari[obarz]a[ni. regis. Medorum. Artavasdis. filio. regendam. tradidi. et. post. e[ius.] m[ort]em. filio. ejus. Artavasdi, quo. interfecto. Tigrane[m] qui. erat. ex. regio. genere. Armeniorum. oriundus. in. id. reg[num misi]...

Լրումն ընթերցի տեսլեանց Հռովմայեցի արձանագրին լինի ի հատուածոց յունականին թարգմանութեան նորին արձանագրի զոր գտեալ է Համիլտոնայ անգղիացւոյ անդէն յԱնկիւրիա՝ նոյնպէս փորեալ ի կէս վիմաց պարսպի.

Ἀρμενίαν τὴν μείζονα ἀναιρεθέντος τοῦ βασιλέως [Ἀρτ..], δυνάμενος ἐπαρχ[ε]ίαν ποιῆσαι μᾶλλον ἐβουλήθην κατὰ τὰ πάτ[ρ]ια ἐμῶν ἔθη βασιλείαν Τιγράνῃ Ἀρτ[αου]άσδου υἱῷ, υἱωνῷ δὲ Τιγράνου βασιλέως δ[οῦναι] διὰ Τιβερίου [Ν]ερώνος ὃς τότ' ἐμοῦ προγονὸς ἦν. καὶ τὸ αὐτὸ [ἔθ]νος ἀφιστάμενον καὶ ἀναπολεμοῦν δαμασθὲν ὑπὸ Γαΐου τοῦ υἱοῦ μου βασιλεῖ Ἀριοβαρζάνει βασιλέως Μήδων Ἀρταβάζου υἱῷ, παρέδωκα καὶ μετὰ τὸν ἐκείνου θάνατον τῷ υἱῷ αὐτοῦ Ἀρταουά[σ]δῃ. οὗ ἀναιρεθέντος Τιγράνην, ὃς ἦν ἐκ γένους Ἀρμενίου βασιλικοῦ εἰς τὴν βασιλείαν ἔπεμψα.

„Զմեծն Հայաստան՝ ի սպանանել թագաւորի նորա Արտաշեսի, յորժամ կարողն էի առնել ընդ նահանգաւ՝ լաւ համարեցայ ըստ օրինակի նախնեացն մերոց տալ զայն թագաւորութիւն զՏիգրանայ որդւոյ Արտաւազդայ, թոռան Տիգրանայ արքայի ի ձեռն Տիբերեայ Ներոնի որ որդեգիր իմ էր յայնժամ։ Յետ այնորիկ յորժամ յետ եկաց եւ ապստամբեաց ազգն այն՝ նուաճեցի ի ձեռն Գայեայ որդւոյ իմոյ եւ ետու ի ձեռս Արիոբարզանայ արքայի Արտաւազդայ որդւոյ Մարաց զի տիրեսցէ, եւ յետ նորա մահուն՝ որդւոյ նորա Արտաւազդայ։ Իսկ եւ սա սպանեալ՝ զՏիգրան որ էր յազգէ արքունի տոհմէ Հայոց՝ առաքեցի ի նոյն թագաւորութիւն”։

## 23

‘Զանգէ եւ աստ ուրեմն նմանագոյն իմն անցք ընդ այն ժամանակս անցանէին։ Ի գալ Ակտաւիանեայ յարեւելս՝ կարգել զերա կողմանցն՝ հասանէր առ նա յԱսորիս հատուած՝ մի ումն ի մեծամեծաց անտի Պարթեւացն Տրդատ անուն ամբաստան ղանագորոյն Հրահատայ։ Ընտուստ յԱսորւոց հնարիւք ի ձեռն բարեկամացն իւրոց եւ ծածուկ Հռոմայեցւոցն օգնականութեամբ մերժեալ զՀրահատ՝ ինքն Տրդատ մտանէր ի թագաւորութիւն ընտրութեամբ նախարարացն։ Այլ Հրահատայ սկիւթացի գնդօք այսրէն դարձեալ՝ առնոյր միւսանգամ ի բուռն զիշխանութիւնն, եւ Տրդատ փախստեայ ի Հռոմ հասանէր՝ առեալ ընդ իւր զորդին Հրահատայ (25 նախ քան զՔր.)[1]։ Բայց Աւգոստեայ յիւր շահ արկեալ զդէպսն ի կիր, փոխանակ պաշտպան սմին կալոյ՝ առեալ առաքէր զպատանեակն առ հայր իւր (23)՝ պահանջեալ ընդ այնր զդրօշսն եւ զնշանսն Հռոմայեցւոց որ առ Կրասեաւ (53) եւ առ Անտոնեաւ (36) գերեցան։ Յամէր իմն եւ դանդաղէր Հրահատ՝ մինչեւ անագան ուրեմն յորժամ եկեալ Աւգոստեայ յԱսորիս (20, գարնայնի)՝ սպառնալ իմն սկսաւ, եւ նորին որդեգիր Տիբեր պատրաստէր յարձակել ի վերայ Պարթեւաց՝ ի կողմանց Հայաստան աշխարհին, յայնժամ ա՛ռ յանձն Պարթեւն տալ զնոսա ի բաց հանդերձ գերեօքն հռոմայեցւովք՝ ոչ ի պատերազմէն ինչ այնչափ զանգիտեալ, որչափ յիւրոցն իսկ հնազանդելոց որ ի բնէ զայրագինք ընդ նա էին (20)։ Տայր շինել Աւգոստոս առ յիշատակի իրացն՝ մեհեան Վրէժխնդրին Արեայ ի Կապիտողիոնին, եւ ի նմին զնշանսն կախէր[2]։ Այսպէս զոր Կեսարն կամէր եւ վասն որոյ Անտոնիոսն ջանացաւ՝ զայն հան Աւգոստոս առանց զինուց ի գլուխ։

Բայց խորամանգն Աւգոստոս առաքէր ընդ պարգեւսն իւր եւ կին մի իտալիացի Թերմուսա կամ Մուսա անուն ի հարճութիւն արքային Պարթեւաց։ ‘Նորա հասեալ տիկնութեան Արեաց՝[3] նախ հաւանեցուցանէր զթագաւորն զչորեսին որդիսն առաքել ի Հռոմ ի պատանդութիւն (8 նախ քան զՔր.)[4], եւ ապա զիւր եւ զնորին որդի զՀրահատակ սահմանել ի պայազատութիւն,

1 Այն ակնարկի եւ ի կտակին Աւգոստեայ (Տախտ. Ե.)։

2 Լիւ. Համառ. 139։ Ովիդ. Երգոց գպր. Երգ 2, տող 17, Թղթոց գպր. Ա. թուղթ 18, տող 54։ Ովիդ. Փառաւոր. գպր. Ե. տող 593։ Սուետոն. ի Տիբեր. 9։ Յուստ. ԽԲ. 5։ Դիոն Կաս. ԽԱ. 31—33. 39։ — Կան եւ դահեկանք Աւգոստեայ, յորոց ի միում կողմանն է գիր՝ Signis receptis S. P. Q. R., եւ երբեմն՝ կայ պատկեր մեհենաբեւեան տաճարին Արեայ, յորում երեւի արծուէնշանն լեգէոնական (յամէ 20)։ Դարձեալ յայլում դահեկանի (յամէ 18) կայ գիր այսպիսի՝ Civib. et sign. milit. a Part. recup. եւ պատկեր՝ կամար յաղթանակաց եւ Աւգոստոս ի չորեքձեան կառօք որչաւէ նստեալ ի մէջ երկուց արանց պարթեւաց։

3 Կայ դահեկան Հրահատայ Դ. յորոյ ի միւսում կողմանն երեւի պատկեր Թերմուսայ կամ Մուսայ հանդերձ անուամբ նորա Μουσα.

4 Ի նոյն հայի դահեկանն Աւգոստեայ, յորում նշմարի այր պարթեւ որ մատուցանէ պատանեակս առ կայսր, (յամէ 8 նախ քան զՔր.)։ Եւ Աւգոստոս ինքնին ի

Իբրեւ զայն զգաց Արտաւանն՝ սպառնալ սկսաւ։ Նա զի միայն ուժ եւ զօրութիւն Հայոց չէր բաւական զդէմ ունել զօրացն Արեաց, եւ դարձեալ եթէ Հռոմայեցւոց ինչ զօրութեամբ հասանէր պաշտպանել Սոհեմի՝ հարկ էր յանձնառեալ տալ պատերազմ ընդ Պարթեւաց. յայն սակս լաւ համարեցաւ Կրետիկոս վերակացու Ասորւոց կոչել զՍոհեմ յԱսորիս եւ զգուշանալ նմա պատահանաց, բայց զպատիւ թագաւորութեանն եւ զանուն թողուլ նմա, մինչեւ տացէ նա զոյգ ի Հռոմ վասն իւրացն (16—17)։

Զուարճացաւ զուարթացաւ կայսր Տիբերիոս իբրեւ լուաւ զյաղթութիւնս իւրացն արեւելից, զի այնպէս պատճառանօք զԳերմանիկոս որ սիրելին ամենեցուն էր՝ հանեալ ի Իտալիոյ անտի որ ընդելեալ ի նա էին՝ առաքեսցէ ի դառնաս աշխարհս, եւ այնպէս նենգ ինչ նմին գործիցէ կամ ի վտանգս ինչ արկանիցէ։ Այնպէս առաջի արկեալ նորա ծերակուտին թէ միայն Գերմանիկեայ իշխանութեամբ մարթի վճար լինել իւրոցն արեւելից՝ վճիռ առեալ նմին առնել յանձն զհրամանատարութիւն ամենայն նահանգացն որ յայնկոյս ծովու իցեն, բայց զԿրետիկոս Սիղանոս՝ որ խնամի էր Գերմանիկեայ, քանզի դուստր նորա խօսեալ էր Ներոնի երիցու որդւոյ Գերմանիկեայ, հան կայր ի վերակացութենէ Ասորւոց եւ կացուցանէր ընդ այնր զՊիսոնն վայրենաբարոյ զի կարճիցէ զյառաջադիմութիւն Գերմանիկեայ (17)։

Նաւարկեալ հասանէր Գերմանիկոս յԱսիա եւ չուեալ յԱսորիս անցանէր ի Հայաստան կոյս, զի յառաջ քան զամենայն ի կատարումն իւրացն փութայր, հրաման առեալ Պիսոնեայ զհետ մի լեգէոնաց կամ ինքնին եւ կամ ի ձեռն որդւոյն ածել զհետ յերկիր սահմանացն Հայոց։ Թէպէտ եւ նա չառնէր զհրամանն ի գլուխ՝ սակայն ինքն Գերմանիկոս խաղաղութեամբ եւ հեզութեամբ յանկուցանէր զմտախրիչ աշխարհին։ Նա եւ թէ յօժարագոյն եւ միաբանագոյն է ազգն ի Զենոն որդի Պոլեմոնեայ արքայի Պոնտացւոց, զի նա անդստին ի մանկական տիոց նմանող նախանձաւոր լեալ էր բարուց եւ սովորութեանն Հայոց, վարժ յորսս նոցա եւ ի խրախճանս եւ այնպէս ածեալ զիւրեւ զնախարարսն եւ զխառնաղանձ ռամիկ մարդիկ։ Զնա առեալ Գերմանիկեայ հաւանութեամբ մեծամեծացն յԱրտաշատ քաղաքի առաջի բազմամբոխ մարդկան խռնելոց կապէր զպսակ թագաւորութեան ի գլուխ։ Մատուցեալ երկիր պագին թագաւորին, գոչեցին միաբան բարբառով՝ կեցցէ արքայ Արտաշէս (Արտաքսիաս), փոխեալ զքաղցրիկ անունն Զենոն՝ յանուն հայրենի թագաւորացն իրեանց (18)[1]։

1 Տակիտ. տեղ. Գլ. ԾԶ։ Յովսեպ. Նախն. պատմ. ԺԸ. 5։ Սուետոն ի Կալիգուլ. Ա. Դիոն։ Ի սոյն դէպս թուի հատեալ դահեկանն Տիբերիոսի (յամէ 19) յորոյ ի միւսում կողմանն կայ պատկեր՝ Յաղթութեան որ յեցեալ ի գաւազն մի կայսերական գահոյից։

ցուցանէր զերիցագոյն յորդւոց անտի խուրոց Արշակ անուն ի թագաւորութիւն Հայոց աշխարհին եւ առաքէր պահանջել եւ զգանձսն արքունի թողեալս իմն ի Նինուէ յԱսորիս եւ ի Կիլի-կիա, եւ մեծարանեալ պատանեայր զրաւել ունել ի Հռոմայ-եցւոց անտի զհին սահմանակողմանս Պարսից եւ Մակեդոնա-ցւոց զոր Կիւրոսի եւ Աղեքսանդրի երբեմն ըմբռնեալ իցէ, եւ արդեամբք խաղայր ի Գամիրս կոյս (34)։

Այլ անտուստ զանխուլ յԱրտաւանայ՝ հրեշտակք երեւելիք ի Պարթեւաց ի Հռոմ հասանէին (35) առաքեալ ի Սիննակայ որ էր այր առհմիկ եւ մեծատուն եւ յԱբդեայ[1] ներքինւոյ՝ որոց յարեցուցեալ էր յիւրեանս եւ զայլս եւս ի մեծամեծացն․ քան-զի չզտանէին զոք յԱրշակունեաց ի բարձ թագաւորութեան, զի զբազումս ի նոցանէ կոտորեալ էր Արտաւանայ, եւ որ ի միջին էին՝ չէին հասեալ ի չափ, յայն սակս խնդրէին զՀրահատ զաւակ Հրահատայ Դ․ ի Հռոմէ։ Միայն, սակն, անուն արշակունւոյ եւ առաջնորդ ոք գործոյն պիտոյ է․ շատ այնչափ է թէ կամիցի կայսր, եւ արիւն եւ զաւակ Արշակայ երեւեսցի ի զեղերս Եփրատ գետոյ։

Հաճոյ թուեցաւ Տիբերեայ, շքեղացոյց զՀրահատ եւ նիւ-թէր առանց պատերազմաց նենգութեամբ զերծ ի գլուխ անել։ Բայց Արտաւանայ ի վերայ հասեալ դաւաճանութեանն զԱբ-դոս սիրոյ պատճառանօք կոչեցեալ ի խրախճանս մեղմ դեղով ծիւրեալ ծնդեցուցանէր, իսկ զՍիննակն խրթեւ յանդէսս զերաց զաւոյն՝ արգելոյր ի գործ արքունի, եւ անտուստ Հրահատ որ զերդն ունեալ էր ի Հռոմ (իբրեւ ի 40 ամաց հետէ)՝ մինչդեռ յԱսորիս էր առ չժուժալ հայրենի բարուցն խստութեան՝ յախտ անկեալ մեռանէր։

2․ Սակայն եւ այնպէս չեկաց ի բաց ի գործոյ անտի կայսր, ա-ռնեալ առաքէր զՏրդատ եւս ի նմին առհմէ ի թոռանց անտի Հրա-հատայ Դ․ թագաւոր հակառակ Արտաւանայ, եւ զՄիհրդատ զեղբայր Փարսմանայ արքայի Վրաց ընտրէր ի թագաւորութիւն Հայոց աշխարհին փոխանակ Արշակայ որդւոյն Արտաւանայ․ եւ ի վերայ ամենայնի կացուցանէր զՎիտեղլիոս վերակացու կամ դատաւոր Ասորւոց (զհայր Վիտեղեայ կայսեր), զի առաջնոր-դեսցէ իրացն մեքենաւորութեան։

Անդստին նախ Միհրդատ առեալ խոստումն ի Փարսմանայ լնուլ նմա ձեռնտու եւ զինու եւ պատրանօք, վարձէ սպա՝ առնել կաշառաբեկ ոսկւով բազմաւ զծառայս Արշակայ արքայի Հայոց ի սպանումն արքայի, որ եւ նենգ գործեալ սպանանեն իսկ զնա։ Ի նմին ժամանակի եւ Փարսման յաճախագունդ զօրօք Վրաց դի-մեալ հասանէր յերկիր սահմանացն Հայոց եւ զԱրտաշատ քա-

1 Abdus.

զօրք թագաւորութեանն առնոյր ի բաւոն։ Իբրեւ լուաւ Արտաւան զգոյժն՝ կամէր զիւր որդի զՕրոդ առաքել խնդրել զքէն վրիժու եղբօրն եւ զգունդս գունդս պարթեւական զօրուն ի ձեռն գումարէ, առաքեալ կոչէր եւ զօր մարդիկ վարձկանութեան։ Բայց Փարսման արքայ վաղագոյն եւս յարեցուցեալ էր յինքն զԱղուանս, եւ ածեալ գունդ վարձկան ի Սարմատաց՝ որոց իշխանք[1] երկոցունց եւս կողմանց առեալ էին ծառայել վարձու (ըստ օրինակի Հելուետացւոց ի նորագոյն ժամանակի), եւ յետ ածելոյ զազգսն սարմատականս փութանակի յերկիրն Հայոց ընդ ճանապարհն Կասպից՝ փակեցին զկապանսն զայն (զԴրունսն Կասպից կամ զԱլանաց) արգելուլ զանցս վարձկանացն ի Պարթեւաց։ Նոյնհետեւ Իբերացիք Վիրք ի կողմն զՊարթեւան կոչէին՝ ի վերայ յարձակելով կամ դիմելով ի վերայ եկելոցն զճարակէ, եւ իբրեւ այն թէ պաշարեալ ունէին զնոսա։ Չկարացին ժոյժ ունել թշնամեացն Պարթեւք, ի մէջ առեալ զարքայորդին ստիպէին տալ պատերազմ։ Նոյնհետեւ ճակատ առ ճակատ, թեւ առ թեւ յերկուց կողմանց ուժգին յարդարէր, զօրութիւն Պարթեւացն էր այրուձին նոցա, իսկ Փարսմանայ էին եւ հետեւակք բազում ի Վրաց եւ յԱղուանից։ Յայնմ վայրի ի մէջ անցեալ պարթեւն յիշեցուցանէր զօրացն զիշխանութիւն տէրութեանն արեւելից, զտոհմականութիւն ազգին Արշակունեաց եւ զՎրացւոցն զծառայահմութիւնն։ Իսկ Փարսման զայն յուշ արկանէր թէ իսկզբանէ ազատ լեալ են ի պարթեւական տէրութենէ, եւ թէ որչափ մեծամեծք գործքն իցեն՝ զոյնչափ յետ յաղթութեանն՝ փառաւորութիւն եւ օգտութիւն, այլ թէ փախիցեն՝ յայնժամ վտանգ մեծ եւ աղէտք. միանգամայն աստի զահեղ տեսիլ իւրեանց ճակատուն ցուցանէր եւ անտի զգունդս գունդս Մարացն ոսկեհուռն, աստի արս, անտի առ եւ աւար եւ ապուռ։ Յերկարէին ձգէին խառնուրդքն ժամս բազումս, մինչեւ Փարսման եւ արքայորդին Պարթեւաց պատահէին միմեանց մեծաւ աղաղակաւ. հար զնա Փարսման ընդ սաղաւարտն եւ մինչդեռ կործանել կամէր՝ առ ստորազնա յարշաւանի երիվարին եւ անձնապահաց հասեալ՝ պատել սկսան զվիրաւորեալն. սակայն զհամբաւի իմն հարաւ թէ մեռաւ արքայորդին, զահի հարան Պարթեւք եւ ետուն ձեռս։

Սրտմտեալ Արտաւանայ՝ ամենայն իսկ համօրէն Արեաց զօրութեամբ հասանէր յերկիրն Հայոց՝ հանել վրէժ, այլ զի հմուտք վայրացն Վիրք էին՝ նոցա լինէր յաղթութիւնն։ Սակայն եւ այնպէս չկայր նա ի բաց ի գործոյ պատերազմին՝ թէ ոչ անդուստ Վիտեղիոս գումարեալ ի մի վայր զլեգէոնսն՝ հանէր համբաւ թէ ի Միջագետս յարձակելոց իցէ, եւ այնպէս արկանէր նմա երկեղուկս։ Նոյնհետեւ ի բաց դարձեալ Արտաւանայ ի Հայոց աշ-

1 Sceptuchi.

Գոտարզայ ախտիւ վախճանելոյ՝ Վոնոն Բ. որ իշխէր յայնժամ Մարաց՝ կոչեցաւ ի թագաւորութիւն (50), եւ սակաւաժամանակեան եւ առանց գործոց ինչ քաջութեան աշխարհակալ՝ հաւանութեամբ այլոցն եղբարց անց պայազատութիւնն ի Վաղարշ Ա. (51—91) նորին որդի ի յոյն հարճէ¹: Իսկ Բակուրայ եւ Տրդատայ որ էին ծնեալ ի բուն կնոջէ արշակունւոյ՝ սահմանեցաւ երկիր թագաւորութեան, միումն Մարաստան, եւ միւսումն Հայաստան (51): Առաջինն իսկ գրգռէր պատերազմ 12ամեայ ի Հայոց աշխարհին՝ նախ Վրաց ընդ Պարթեւաց, եւ ապա Հռոմայեցւոց ընդ Պարթեւաց:

## 25

Էր լեալ Փարսմանայ արքայի Վրաց որդի մի Հռադամիզդ անուն՝ բարձրանձն, զօրեղ, ճարտար յառաջնորդութիւն եւ ի մէջ ազգաց արուարձանեաց բարեխնամ եւ երեւելի: Իբրեւ ետես հայրն ծերունի թէ պայազատութեանն ակն եդեալ է եւ միտադրյն ի նա է ժողովուրդն՝ դարձոյց զմիտս նորա յայլ՝ ցուցեալ զՀայոց աշխարհ՝ զոր ես ինքնին, ասէ, ետու եղբօր իմում Միհրդատայ՝ մերժեալ անտի զՊարթեւս: Այնուհետեւ Հռադամիզդ յարուցեալ գայր ի Հայս առ հօրեղբայր իւր հաւատարիմ պատճառաւ, կեղծաւորեալ թէ ընդ հօրն գժտեցաւ. եւ մօրուին ատելութեան չկարաց ունել ժոյժ. եւ պատուեալ եւ մեծարեալ ի Միհրդատայ իբրեւ որդի սիրելի՝ գաղտ զնախարարս Հայոցն միաբանէր ի խռովարար ապստամբութիւն: Յետ այնորիկ հաշտութեան պատճառանօք առ հայրն հասանէր. որոյ այնուհետեւ պատճառեալ պատճառս պատերազմի ընդ արքային Հայոց թէ ի տալ իւրում պատերազմ ընդ արքային Աղուանից եւ ի կամելն կոչել զՀռոմայեցիս ի թիկունս՝ ընդդէմ դարձաւ Միհրդատ, գումարէր գունդ հարուստ ի ձեռն որդւոյն: Զի ահի հարաւ թագաւորն Հայոց ընդ յանկարծ արշաւանն, փախեալ ամփոփեալ ամկանէր յամուրն Գառնոյ² յորում կայր զօր պահականութեան Հռոմայեցի եւ հրամանատար Կեղիոս Պողղիոն եւ Կասպերիոս հարիւրապետ: Իբրեւ ետես Հռադամիզդ թէ անհնարին առ առնուլ է վայրն, զանձնութիւնն թողեալ՝ արար կաշառաւորել զՊողղիոն որ հաւանեցուցանէր զթագաւորն ելանել յամրոցէն յիշեցուցեալ նմա թէ չէք ինչ երկեւղ. եղբայր երիցագոյն է քո, ասէ, Փարսման եւ դուստր քո կին է Հռադամիզդայ եւ դու նորա հօրեղբայր, եւ չէք ինչ այլ ապաւէն բայց ամուրս թափուր ի ռոճկէ: Յաճախեաց Հռադամիզդ զպարգեւսն եւ ի ձեռն Պողղիոնի սպառեցան գաղտ ի զօրականն՝ այնք որ սպառնային ապստամբելովք զթագաւորն ի

1 Տակիտ. ԺԲ. Գլ. Ժ—ԺԴ:
2 Gorneae.

ղագոյն սկսաւ սերտ բարեկամութիւն Արշակայ ընդ տէրութեանն Հռոմայեցւոց։ Գտանեմք գունդ աղեղնաւորաց հեծելոց Հայոց ի պատերազմի կայսերն Կոստանդեայ ընդ Մագնենտեայ բռնաւորի ընդ հրամանատարութեամբ Մենեղաւեայ հազարապետի (351) [1]։ Հրաման տայ կայսր Կոստանդիոս չառնուլ հարկս ի կալուածոց անտի՝ զոր ունէր Արշակ արքայ Հայոց յերկրի սահմանաց Հռոմայեցւոց [2]։ Իբրեւ դրաւական տեւական հաւատարմութեանն տայր կայսրն Արշակայ կնութեան զօրիորդն Ողոմպիա դուստր Աբղաբիոսի անձնապահապետի, որ էր լեալ ի խօսման Կոստասայ, սնեալ ի պաղատան նորա (ընդ մէջ ամացն 351—355) [3]։ Փ. Բիւզանդացի եւ Մ. Խորենացի պատմեն զնոյն զՈղոմպիադայ՝ որ իցէ ի կայսերական տանէ եւ տուեալ իցէ նա ի Վաղեսէ։

Զայս իմն պահանջէին եւ ժամանակացն հանգամանք։ Այսու իմն առնէր Շապուհ Բ. գտանել ժամ դիպող գրաւել միւ-անգամ զնահանգսն որ ի Միջագետս եւ առանձինն իսկ զՀայաստան աշխարհ զոր թող Ներսեհ դաշամբք 40 ամօք յառաջ։ Իսկ եւ իսկ յետ մահուն Կոստանդիանու՝ ծախեալ ամ մի վասն պատրաստութեան՝ անդէն գրգռէր ի մարտ պատերազմի ընդ նորին որդւոյ Կոստանդեայ. յերկարէր այն պատերազմ եւ երկեւղ պատերազմին ամս 25 (338 — 363) անցանելով ընդհատ ինչ ժամանակ ի մէջ։ Յայսմ իրացն հանգամանս՝ ոչ միայն օգուտ Հայոց աշխարհին այլ եւ կայսերն Հռոմոց պահանջէր տալ միմեանց ձեռն։ Յայն սակս մտադիւրագոյնս իսկ շահեցաւ զնա կողմն Հռոմայեցւոց՝ իբրեւ կարեւոր դաշնաւոր եւ ույժ մեծ ընդդէմ զօրութեանն Պարսից։ Թէպէտ եւ բազում անգամ փորձեցաւ Արշակ ի սասանականէն հրապուրանօք, սպառնալեօք, նենգութեամբ՝ թողուլ զկայսրն եւ ի նա յանկչել, այլ զուր [4]։ Բանիւք եւ արդեամբք իսկ ասպարէզ պարսկական պատերազմին ոչ միայն Միջագետք էին, այլ եւ հարաւային սահմանք Հայոց։ Երիցս պաշարեցաւ քաղաք Մծբնացւոց ի Շապհոյ բազմամբոխ զօրօք, զառաջինն յամի 338 յաւուրս 63, երկրորդ անգամ յամի 347, եւ յետուստ յամի 350 իբրեւ ամիսս երիս, սակայն ապրեցան քաջալերութեամբ եւ աղօթիւք սրբոյ եպիսկոպոսին իւրեանց Յակոբու. եւ Շապուհ զարհուրեալ յաղթի ազգէ

1 Մատեան Թէոդոս. Գիրք Ա. Ց. Ա։ ի սմին օրէնս յիշէ Նեւեղաւոս սմա անուն երբեմն բդեշխն եւ մագիստրոս հեծելոց եւ հետեւակաց եւ Դոմիտիանոս պրոտեկի. յանուանց սորանցս եւ ի պատուոյ նոցա յայտ իմն է թէ այն օրէնք ի Կոստանդեայ ժամանակաց է եւ ոչ ի Կոստանդիանու՝ որպէս ունի վրիպակաւ մատեանն Թէոդոսեան։

2 Զօսիմ. Բ. 51։

3 Ամ. Ի. 11 եւ այլն։ Ս. Աթան. ի Թղթին առ Միայնակեացս, պարսաւելով զԿոստանդիոս՝ ասէ. Զխօսեալն Կոստասայ զՈղոմպիա ետ բարբարոսաց, զոր նա (Կոստաս) մինչեւ ցվախճան իւր պահեաց եւ սնուցանէր զնա զի լինիցի իւր կին։

4 Ամ. Ի. 11։ Audiebat enim (Constantius) saepius eum (Arsacen) tentatum a rege Persarum fallaciis et minis et dolis, ut Romanorum societate posthabita, suis rationibus stringeretur. Համեմատեա ընդ Բուզանդայ, էջ 186։

անպղծելի մեկնեցեալ յետոյ[1], այլ չեւ էր ըստ խաղաղութեան։ Հրաման առնոյր ի կայսերէ Մուսոնիանոս վերակացու արեւելից առաքել պատգամ առ արքայից արքայ ի ձեռն Դենշապհոյ[2] սպարապետի Պարսից ի Միջագետս, վասն խաղաղութեան (357)։ Բայց զի ի կռուի ուրեմն էր Շապուհ ընդ Հոնաց[3], ընդ Քուշանաց[4], եւ ընդ Գեղաց[5] ի ծայրս սահմանացն, անագան թուղթքն հասանէին, եւ եդեալ ընդ նոսա դաշինս խաղաղութեան եւ թագաւորին Հոնաց Գրումբատայ լեալ դաշնաւոր[6], յնուհետեւ ամբարտաւանագոյն գրէր Շապուհ թուղթ առ կայսր առաքելով ի ձեռն Նարսեհի ուրումն, ցուցեալ թէ եւ այն իսկ իւր չափաւորութիւն է զի զՄիջագետս միայն եւ զՀայաստան պահանջիցէ եւ ոչ ինչ աւելի (358)[7]։ Չառ յանձն կայսր եւ զհետ Նարսեհի առաքեաց հրեշտակս (զՊրոկոպէս կոմս եւ զՍպեկտատոս տրիբուն եւ նոտար) պատարագօք. յանդիման եղեն Շապհոյ ի Տիգրոն, չկարացին հաւանեցուցանել զնա ի բաց կալ ի պահանջմանցն, եւ դարձան յետս (358, Աշն.)։

Նմին իրի անդէն գարնայնի 359 ամին արծարծեցաւ պատերազմ զօրավարութեամբ Ուրսիկինոսի առն քաջի եւ ճարտարի, բայց զպատրաստութիւնն ունէր Սաբինիոս ծերն եւ անկար՝ ի տողերց Եւսեբեայ սենեկապանի ներքինւոյ։ Յայն սակս չյաջողեցին ինչ այնչափ իրք Կոստանդեայ։ Նմին իրի իսկ խաղաց եւս յառաջադէմ Շապուհ յԵփրատ կոյս՝ անցեալ ընդ Տիգրիս, ունելով ի մտի մտանել յԱսորիս. եհաս հանդերձ թագաւորօքն Հոնաց եւ Աղուանից յԱմիդ (ի Տիգրանակերտ), յորդորէր զքաղաքացիսն տալ ի նա ձեռս. այլ իբրեւ չառին յանձն քաղաքացիքն եւ նետ մի ի քաղաքէ անտի հար ընկէց զպատանեակն կայտառ զորդի Գրումբատայ արքայի Հոնաց, երդուաւ Շապուհ խնդրել զվրէժ դաշնաւորին իւրոյ եւ զքաղաքն Տիգրանակերտայ դարձուցանել յաճիւն։ Յետ 73 աւուրց պաշարման եւ հարկանելով բաղխարօք ի թմբից անտի շուրջանակի կազմելոց ըստ յոնական արուեստի թելադրելոյ յԱնտոնինեայ ի զօրավարէ ումեմնէ հռոմայեցւոյ հատուածելոյ առ նա, առաւ քաղաքն եւ աւերեալ քանդէր, զերեւելի երեւելիս հրամանատարացն հռոմայեցւոց եւ հայոց տայր կախել արքայ Շապուհ, զմնացեալսն (բաց ի սակաւուց ոմանց) վարէր ի գերութիւն (359)[8]։ Զայս այսպէս Ամմիանոս՝ որ էր ի քաղաքի անդ պաշարելոյ եւ փախուցեալ ազատեցաւ ընդ սակաւաւորսն։ Ըստ Խորենացւոյն գրելոյ բերդա-

1 Թէոդորետ. Եկ. Պատմ. Բ. 30։
2 Tamsapor.
3 Chionitae.
4 Cusenae.
5 Gelani.
6 Ամմ. ԺԶ. 9։
7 Ամմ. ԺԷ. 5։ Վերնագիր թղթոյն է "Արքայից արքայ Շապուհ, կցորդ աստեղաց, եղբայր արեգական եւ լուսնի, Կոստանդեայ կայսեր եղբօր խնդում ողջոյն բազում", համեմատ թղթոյ իւրք առ Խոր.։
8 Ամմ. ԺԹ. 1։

զինս եւ թափել միւանգամ ի Պարսից, այլ չկամեցեալ դարձա-ձանձրել զՇապուհ, ուր եւ եհաս խաղ ի վերջ կողս 360 ամին[1]: Երրորդին միւանգամ առաքէր առ Յուլիանոս որ յայնկոյս Տի-գրիս գետոյ իցեն (առ նախարարս հարաւային կողմանցն Հայոց) կալ հաւատարիմ եւ առանձինն առ Արշակ արքայ Հայոց եւ առ Մերուժան կամ Միհրան[2] արքայ Վրաց արձակէր պատգամաւո-րութիւն հանդերձ երեւելի պատարագօք արքունական ձորձոց, եւ այնպէս ի յաջորդ ամին (361 գարնայնի 1. Մարտ) եւ նա ի քա-ղաքէ Անտիոքացւոց. անցեալ էր նորա ընդ Եփրատ եւ մտեալ յՄեծ-Հայ, յորժամ հասանէր զրոյց թէ մեկնեցաւ յետս Շապուհ ամենայն բանակաւն վասն անյայտ ինչ պատճառաց: Զուարճա-ցաւ զուարթացեալ կայսր եւ քան զնա առաւելագոյն իշխեն զասնայր յետոյ, քանզի Յուլիանոս կացուցեալ իշխանակալ ի Գաղիա Գա-ղիացւոց հատեալ կայր յայնժամ զօրօք ի Գերմանիէ[3]: Այլ ի Մոպսուեստիա Կիլիկեցւոց Կոստանդիոս վախճանեալ՝ Յուլիանոս առնոյր ի բուռն զտէրութիւնն եւ զգահ տիրականն պատերազմին (361 ի վերջ կողս աշնայնոյ):

## 123

Լու եղեւ առ Արշակ արքայ. աճապարեալ առաքէր զմեծա-մեծս ի նախարարացն հրեշտակութեամբ առ կայսր նոր ողջու-նել զնա եւ նորոգել զդաշինսն. որ եկին յանդիման եղեն կայ-սեր ի Կոստանդնուպօլիս (362 գարնայնի)[4]: Յետ այնորիկ եկն կայսր Յուլիանոս յԱնտիոք (Յուլ.) եւ զձմեռն ամենայն ընդ ան-հնարին պատրաստութիւն առն եւ ձիոյ, մեքենայից եւ ռոճկի վասն պատերազմին հանէր՝ յաճախելով զօրս դից, ի մտի եդեալ զառաջին պատերազմացն զվրէժ օն միանգամայն խնդրել եւ մե-ծամեծ պարծանս անձին պատրաստել: Յայն սակս չարար նա ե-րեսս հրեշտակութեանն եւ աղաչանացն առաքելոց ի Շապհոյ, այլ եւ պատասխանւոյ եւս զթուղթ թագաւորին: Գային առ նա այնուհետեւ այլեւայլ հրեշտակութիւնք յիշխանացն եւ ի մանր թագաւորաց արեւելից, մատուցեալ զանձինս իշխանական ընդել նիզակակիցս օգնական Հռոմայեցւոց ի պատերազմին մեծի: Այլ Յուլիանոս ընդունել ընկալեալ զնոսա սիրով, բայց վստահութիւն ինն պատճառաւ՝ չկամելէ, ասէր, զօրութեանն Հռոմայեցւոց ի նոցանէ զառնել օգնականութիւն, որոց մանաւանդ պաշտպանելն եւ օգնելն պարտի: Միայն առ Արշակ արքայ Հայոց առաքեալ ազդ առնէր կազմել զաւնդ հարուստ եւ մեծ պատրաստ խաղա-լոյ ուր ուրեք հրամայեսցի դիմել կամ հարկանել եւ խոստանայր

1 Ամ. Ի. 11:
2 Meribanes.
3 Ամ. ԻԱ. 6—13:
4 Ամ. ԻԲ. 7:

ընդ հուպ տալ վասն նորին զըրոյ[1]։ Յայնժամ ուրեմն թուի առաքեալ Յուլիանու եւ զիւր պատկերն զդիւանկար առ Արշակ, զոր եւ կանգնէր նա յարքունական եկեղեցւոջն։ Վասնզի չէր խոկ այս արտաքոյ ինչ սովորութեան Յուլիանու։

Այլ այնուհետեւ կայսր ի քաղաքէն Անտիոքացւոց գարնայնի (363 Մարտ. 5) հանեալ ի ձմերոցաց զզօրսն՝ որք ժողովեցան ի Հերապօլիս, եւ էին առ հասարակ 35,000 հռոմայեցւոց, թող զՍկիւթացիսն կամ զԳութսն եւ զՍարակինոսսն որ եկեալ հասեալ էին յուսով աւարին։

Անցեալ ընդ Հերապօլիս անց ընդ նաւակամուրջն Եփրատու, որ կայր ի հարաւոյ Բիր դղեկի, հասանէր ի Խառան՝ ուր բաժանէր պողոտայն արքունի յերկուս, մի ընդ ձախմէ ընդ Ադիաբենէ առ Տիգրիս գետով եւ միւս յաջակողմն ընդ Ասորեստան առ Եփրատ գետով։ Անդ բաժանէր վասն ճանապարհին ընդ ձախ Յուլիան զզօրսն, գունդ մի 30,000 արանց ի ձեռն տայր երկոցունց զօրավարացն Պրոկոպիոսի եւ Սեբաստիանոսի (մանիքեցւոյ) հրաման տուեալ խաղալ ի Մծբին կոյս, անդ մինչ չեւ անցեալ ընդ Տիգրիս, զգուշանալ ասպատակին Պարսից, որ թերեւս յանկարծ հասանիցէ, ապա անցանելով ընդ Ադիաբենս զգեղեցիկ գեղեցիկ անդս զպտղաբերս աշխարհին Պարսից ապականեալ խանգարել։ Այլ խնամով իմն հրաման տայր կայսր զօրավարացն՝ միաբան ընդ Արշակայ արքայի գործել, եւ նովաւ հանդերձ արշաւեալ ընդ աշխարհն Կորդուաց, Մոկաց եւ Հեր եւ Զարեւանդ գաւառի փութանակի հասանիցեն յԱսորեստան ի ժամ նեղութեան իւրք եւ պիտոյից լինել թիկունս օգնականութեան եւ այնուհետ միանալ ընդ բուն բանակին առաջի Տիզբոն քաղաքի արքայութեանն Պարսից։ Ինքն Յուլիան ընդ աջոյ ճանապարհն հասեալ (Մարտ 27) ի Կաղղինիկոն, ուր առաջի ժողովեցաւ տորմիղ նաւացն 1100ոց եւ առ Կիրկեսիոնիւ, որ էր բերդ ամուր (շինեալ ի Դիոկղետիանեայ) ի վերայ սահմանաց երկուց թագաւորութեանց ի գետախառնուրդս Քաբոր գետոյ ի գետն Եփրատ. անցեալ ընդ Եփրատ ձգելով նաւակամուրջ 50 նաւաց, խաղայր ընդ երկիր թշնամւոյն միշտ զգետն ի խոնարհ, իբրեւ առ երի նաւամարտիկ նաւաց, որ գային ստէպ զհետ. բուն զօրութիւն հետեւակազօրուն էր ի միջին վայրի զոր առ յինքն կայսր, աջ թեւն յայլեւայլ ազգաց ընդ Նեւիտաւ էր միշտ առ եզր նաւացն, իսկ զձախոյ թեւն ծածկէր այրուձին ընդ զօրավարութեամբ Արինթէոսի եւ Որմզդի՝ արքայորդւոյն Պարսից դարձելոյ ի քրիստոնէութիւն առ Կոստանդիանու. զառաջս գնդին եւ զկողմն պահէր Ղուկիղղիանոս 1500 դիւրաշարժ հեծելօքն, իսկ զվերջապահսն տանէր Սեկունդինոս կուսակալ Ուռհայեցւոց։

1 Առ. Իբ. 2.

Դժուարին արշաւանն էր, այլ յաջող. հարաւ ցրուեցաւ բանակն արքունի առաջի Տիգրանի, հանդերձ վահանաւոր եւ փղակոյտ բազմութեամբ եւ ի հնչիւն փողոյ եւ գոչման հռոմայեցի եւ գունդ զօրուն հալածեցաւ ամենայն, մինչեւ ի ներքս ի պարիսպն քաղաքի, եւ մնաց յաւար բանակին, այլ ոչ առանց մեծի ծախման կոտորածոյ հռոմայեցւոցն իրքն վճարեցան:

Այլ գործ էր այնուհետեւ առնուլ զՏիգրան. ի խորհրդեան զօրավարացն սահմանեցաւ թէ անհնարին է եւ դժուարին՝ պաշարելով առնուլ ի բուռն. այդ առնէր Շապուհ ի ձեռն Որմզդի՝ տանել դաշինս խաղաղութեան պատուով վասն հռոմայեցւոցն, այլ արհամարհեաց անզգամեալ Յուլիան եւ դրդեալ ի սուտ խրատուէ հակառակ խորհրդոց զօրավարացն՝ այրեաց զտորմիղ նաւաց իւրոց տանջելով զօրացն (Յուլ.), զի անարգել մերձենայցէ ընդ հիւսիսոյ արեւմտից ընդ կողմն Ատրպատականի միանալ ընդ Արշակայ եւ ընդ հիւսիսային բանակին ընդդէմ զօրուն զոր գումարեալ բերէր ի վերայ նորա Շապուհ: Փոշի պարսկական գնդին որ մատէր՝ կարծեցոյց թէ եկեալ հասեալ իցէ Արշակ զօրօքն, դրդեցան առ անդ ճակատք, մինչեւ յետուստ յանկարծակի յարձակումն կրեալ ի հեծելազօրուէն Պարսից եւ ինքն կայսր առանց զրահից մտեալ ի ճակատ՝ եղեւ նետահար (363. Յուլ.)[1]:

Աղէտաբերութիւն հռոմայեցւոցն՝ էր եւ պարտութիւն հայոց թագաւորին. Յովկիանոս յաջորդ Յուլիանու փութանակի դաշինս եդեալ ընդ Շապհոյ՝ թողոյր նմա զնահանգսն յայնկոյս Տիգրիս գետոյ զԱրզն նահանգ, զՄոկաց աշխարհ, զԶաւդէս, զՌէհմենա եւ զԿորդուաց աշխարհ[2] հանդերձ 15 բերդիւք մանաւանդ Սինգարաւ եւ Մծբնաւ՝ յորմէ հան ակամայ Յովկիան զբնակիչսն տանել յԱմիդ[3]: Երկրորդ բուն գլխաւոր մասն դաշանց զոր Շապուհ պահանջէր՝ էր թողուլ առանձինն զթագաւորն հայոց եւ չլինել կայսեր նմին օգնական ի մարտ պատերազմի հակառակ Պարսից: Այսպէս առ երեսս իմն չափաւորութեամբ զնոյն հաճէր ընդունել, զոր ի սկզբանն պահանջէր, այս ինքն գրաւել ունել զՀայոց աշխարհ[4]:

Յանձն առ կայսր, թողաւ լքաւ Արշակ առաջի պարսկական զօրութեանն՝ որ առաւելագոյնն մրմռեալ զայրանայր յայնժամ, զի թիկունք օգնականութեան հռոմայեցւոց եղեւ թագաւորն հայոց:

Ապաքէն իսկզբանէ իսկ թուի թէ ածէր Արշակ զմտաւ զտագնապն, որ նմա ի վերայ հասանէր՝ եթէ Պարսիկք յաջողէին, եւ յայն սակս խուսափէր իմն լինել արդեամբք օգնական Յուլիանու,

1 Ամ. ԻԵ. 8:

2 Arganena, Moxoena, Zabdicena, Rehimena, Corduena.

3 Ամ. ԻԵ. 9: Զօսիմ. Գ. 34:

4 Ամ. ԻԵ. 9:

## 124

Մի միայն պատուար ամուր թագաւորին Հայոց ընդդէմ թշնամւոյն՝ միաբանութիւն եւ խաղաղութիւն աշխարհին էր. այլ այն իսկ էին աղէտք՝ զի ոչ առ անձին եւ ոչ յառաջնորդութեանն յաջողեալ եւ խաղաղութեամբ էր ընդ նախարարացն Արշակ։

Պատանդք ի Տիրանայ առաքեալ էին առ Հռոմայեցիս՝ Տիրիթ որդի Արտաշիսի անդրանկան արքայի որ վաղամեռիկն եղեւ եւ Տրդատ երրորդ որդի արքայի[1]։ Տրդատայ վախճանեալ կամ սպանեալ տարապարտ՝ նորին որդի սիրելին Գնել յետ պատուելոյ հիւպատոսութեամբ՝ դառնայր յաշխարհն հայրենի ընդ հօրեղբօր իւրոյ խանտաւորն Տիրիթայ։ Արդ ուրեմն յաջողէր Տիրիթայ հնարիւք միաբանութեամբ ընդ Վարդանայ Մամիկոնեայ զինակրի արքայի արկանել զԱրշակ ի կասկածանս վասն եղբօրորդւոյն իւրոյ Գնելոյ, յորժամ փեսայացաւ սա Անդովքայ նահապետի Սիւնեաց ի դուստրն նորա ի բարենշանն եւ հնարիմաց ի Փառանձեմ. արքունական իսկ էին հարսանիքն, ուստերք նախարարացն տուեալ նմա ի սպաս եւ ի հրահանգս, եւ բնակութիւն էր նորա ի Կուաշ յարքունական նահանգին Արարատայ։ Թէպէտ եւ հրամանաւ արքայի ուստերք նախարարացն արձակեցան եւ ինքն փոխեցաւ բնակել ի Շահապիվանի ի մայրենի ժառանգութեանն, այլ սէր նախարարացն ընդ Գնել եւ խանտանք ընդ մեծութիւն որսոց նորա որպէս եւ ընդ կնոջն գեղն՝ կործանեցին զնա. սպանաւ Գնել հրամանաւ Արշակայ յորսան, զոր պատրաստեաց նա արքայի ի Ծաղկոց լերինն, ի ձեռն Վարդանայ՝ իբրեւ ընդ խաղս։ Զփառանձեմ առ արքայ ի հարճութիւն, այլ սա դեղեալ սպան զդշխոյն Ողոմպիա վասն տիկնութեանն ի ձեռն Մրջիւնկանն անարժան երիցու. սպանաւ այնուհետեւ նորա թելադրութեամբ եւ Վաղինակ Սիւնի՝ զի առցէ Անտիոք կամ Անդովկ հայր նորա զգատիւ նորա։ Նա եւ զառաջնոյ իսկ զառնն մերժ հան կինն ժանտ։ Միաբանեալ ընդ Վասակայ մեւս եւս զինակրի՝ կրսերոյ եղբօր Վարդանայ Մամիկոնեայ՝ քսութեամբ տայր սպանանել ի ձեռն նորա զՎարդան, նա եւ զՏիրիթ զնորին սիրելի, յորժամ երթային նոքա հատուած ի Պարս՝ առ չժուժալ թշնամանացն զոր յարքայէ կրեցին[2]։

Արդ եւ ընդ ամենեցուն իսկ նախարարացն անկաւ թագաւորն ի գժտութիւն։ Յօժարեաց շինել Արշակ դաստակերտ առ լեառնատամբն Մասեաց, զԱրշակաւանն, եւ զի փութանակի շէն տեղին լինիցի՝ ըստ օրինակի հիմնարկուին Հռոմայ՝ հրաման տայր զի լինիցի այն տեղի ապաստանաց յանցաւորացն. եւ լցաւ,

1 Խոր. Գ. Գլ. ԽԳ։

2 Խոր. Գ. Գլ. ԻԴ. ԻԵ։ Բուզ. Գ. Գլ. ԽԱ—ԽԵ։

աւանացաւ, քաղաքացաւ վայրն աւանդատուօք, պարտականօք, ծառայիւք փախստէիւք, գողօք, սպանողօք եւ կնահանօք։ Զուր էր բողոք նախարարացն, ընդ վայր խրատ եպիսկոպոսապետին Ներսիսի։ Յետաւստ ուրեմն դառնացան զկծեցան նախարարքն եւ միաբանեալ բազմաց ի նոցանէ անկան յանկարծ ի վերայ արքունական ձեռակերտին եւ սուր ի վերայ եդեալ զբնակիչսն կոտորեցին. անագան հաս ի վերայ եպիսկոպոսապետն սուրբ, հազիւ թափեաց ի նոցանէ զմանկտին ստնդիացս՝ որ ի գերութիւն սահմանեալ էին[1]։

Գրգռէր այնուհետեւ Արշակ ընդ իւրոցն իսկ նախարարաց միաբանելոց ընդ առաջնորդութեամբ Ներսեհի Կամսարականի. տակաւաւորքն մտերմօք եւ վրացի գնդաւ՝ ի նեղ իմն անկանէր թագաւորն, զի նոքա ի Պարսիկս յեցեալ էին եւ ինքն չունէր այն օգնականութեան իմիք ի Յունաց։ Յայնժամ եպիսկոպոսապետն՝ որ յետ անցիցն Գնելայ թողեալ լքեալ էր ամենեւին զարքունիսն՝ կոչեցաւ անկանել ի մէջ։ Խոստմամբ ուղղութեան թագաւորին եւ ստէպ պաղատանք նախարարացն եւ եպիսկոպոսացն ժողովելոց հաւանեցուցին զալ լինել համազակեր եւ հաշտեցուցիչ ի մէջ պատակտելոցն, եւ հաստատեցաւ իսկ ուխտ ի միջի՝ նոցա ծառայել միամտութեամբ եւ նմա իշխել ուղղութեամբ։

Այլ չյերկարեաց Արշակ ի խոստմանն. ի բազմաց ի նախարարացն խնդրեցաւ վրէժ, ազգ Կամսարականացն կոտորեցաւ, բաց ի փախուցելոցն առ Շապուհ ի Սպանդարատայ (յեղբօրորդւոյն Ներսեհի) եւ յորդւոց նորա ի Շաւարշայ եւ ի Գազաւոնէ, եւ գրաւեցան յարքունիս քաղաք ոստանի նոցա Երուանդաշատ եւ աւանն Արտագերից, եւ համբարք նոցա ածան յԱրմաւիր՝ ուր նստէր թագաւորն։ Դիականք սպանելոց թողան գէշ գազանաց ի բացի, եւ շինականքն՝ որ կամեցան ամփոփել զոսկերս տերանցն, մահու պատուհաս կրեցին. իսկ զԽադ եպիսկոպոս Բագրեւանդայ եւ Արշարունեաց որ ոչ պատահեաց յառաջնում նուագին եւ այսմ ժամանեալ՝ կշտամբէր զթագաւորն, հազիւ ապրեցուցին ի քարշանաց եւ ի քարկոծմանց այրք կորովիք տայգերք դատերն նորա յԱպահունեաց տոհմէ։

Այսպէս անդէն ի ժամանակի զի խաղաղութեան դաշինք Պարսից ընդ Յովիանու կռեցան եւ դատարկացաւ ձեռն ժառանգական թշնամւոյն թագաւորութեանն Հայոց, բեկեալ իմն էին սիրտք նախարարացն եւ ցրտացեալ ի թագաւորէն եւ յօժարագոյնք իմն ի Պարսիկս, յանձն լինէին նոցա եւ մեծարեալք յարքայից արքայէ դառնային յիւրեանս[2]։ Զուր ժողովեալ խրատէր զնոսա եպիսկոպոսապետն ի սէր եւ ի հնազանդութիւն հայրենի

1 Խոր. Գ. ԳԼ. ԻԷ։

2 Sollicitans quosdam optimatum et satrapas.

թագաւորին եւ ի միաբան պատերազմ ընդդէմ հալածիչ եւ մոգակրօնին թագաւորին: «Թէ բեւր չար իցէ, ասէ, Արշակ, սակայն աստուածապաշտ է, եւ եթէ մեղաւոր եւս իցէ, սակայն թագաւոր ձեր է»[1]: Ընդէն խոկ յառաջնում հաշտութեանն՝ Մերուժան նախահայրն Արծրունեաց եւ նորին քեռայր Վահան Մամիկոնեան չկամեցեալ հաշտել ընդ թագաւորին՝ երթեալ էին հատուած առ Շապուհ ծառայել նմա հակառակ թագաւորին իւրեանց եւ հայրենի աշխարհին՝ յուսով թագաւորութեան Հայոց:

Սոցա առաջնորդութեամբ եւ խորհրդով մտանէր Ալանայոզան ոմն պահլաւիկ հզօր գնդաւ՝ գալ առնել զթագաւորն Հայոց: Խոզաւ լքաւ Արշակ յիւրոցն օգնականութենէ, զոր յիշեցուցանէր զօրավարին Պարսից զհամարձակն ազգականութիւնն. այսպէս ասէր ի նեղ անկեալ եւ անարի հաւանեալ ի բանս խաղաղութեան եւ հաշտութեան եւ հրապուրանաց եւ երդմանց Շապհոյ[2], յանձն առ երթալ յարքունիս արքային Պարսից հանդերձ սպարապետաւն իւրով Վասակաւ, արձակելով յառաջագոյն զպատանդս[3]: Զառաջինն մեծարեաց զԱրշակ, ապա յետ թերեաց ամսոյ[4] հրաման տայր Շապուհ հանել տանել զնա ի խորշ մի, խլել զաչսն[5], եւ կապեալ ասպեօք արծաթեօք[6] կամ երկաթեօք ի Խուժաստանի՝ յԱնդմիշն (յԱնուշն) բերդի կամ յԱգաբանա դղեկի պահել (369). ուր չարչարեալ մեռանէր զղջ-խոստովանեալ[7] եւ կամ առնէր ինքն անձամբ անձին[8]. իսկ Վասակ մորթեալ ըստ Պարսից օրինակին կախեցաւ զմորթն բերդին[9]:

Այսպէս թողաւ անպատսպար ի Հռոմայեցւոց թագաւորն՝ որ ուխտեալ բանիւ էին լինել նոցա հաւատարիմ ըստ միաբանութեան Արշակունոյ. միայն վերջին զանդորրութիւն նորա յաղթանակին Յովբիանոս ուծացոյց տագնապէն զնոսա յիւրմէ, մինչեւ Կիրակեաց ճարտարախօսն բիծ եւս ծանուցանէ ի Պատմիչս զԱրշակաւն ապկանել:

## 125

Սաղ իսկ յառաջ քան զլինելն թշնամութեանն՝ առաքեալ էր Շապհոյ առաքել Արշակայ հրաման ածել եւ զդշխոյն Հայոց, որպէս եւ զկանայս նախարարացն, ոչ միայն զայնոսիկ որ հաւա-

[1] Բուզ. Դ. Գլ. ԺԱ:

[2] Ամմ. ԻԷ. 12. per exquisitas perjuriisque mistas illecebras. եւ միաբան ընդ նմա Փաւստ. Բուզ. Դ. ԾԲ. «Շապուհ արքայ մեծաւ աղաչանօք եւ պատուաբանօք եւ հնազանդութեամբ եւ սիրով զԱրշակ առ ինքն կոչէր, զի արասցէ ի մէջ իւրեանց սէր եւ խաղաղութիւն եւ բարեկամութիւն մեծ». եւ ԾԴ. «իսկ Արշակ խնդրէր հաւատարիմ երդումն... նա (Շապուհ) եւս բերել ըստ օրինացն հաւատարիմ երդմանց թագաւորութեանն Պարսից՝ աղ, կնքել վարազ նկարագիր մատանեաւ, եւ յղեաց»:

[3] Խոր. Գ. Գլ. ԼԴ. Բուզ. Դ. Գլ. ԾԴ:

[4] Ամմ. անդ: Բուզ. Դ. Գլ. ԾԴ. եւ 168:

[5] Ամմ. անդ:

[6] Ամմ. անդ:

[7] Ամմ. անդ:

[8] Խոր. Գ. Գլ. ԺԵ: Բուզ. Ե. Գլ. Է:

[9] Բուզ. Դ. Գլ. ԾԴ:

Կիւրղակ եւ Արտաւան հրեշտակութիւն առ Վաղէս եւ աղաչէին զօրօք առաքել նստուցանել զՊապ յաթոռն։ Այլ քանզի վաղ զայրացեալ էր անհնարին Շապուհ ընդ Հռոմայեցւոց վասն ընդունելութեանն այնորիկ, յայն սակս ի դէպ իմն համարէր կայսր չօգնել առ ժամն զօրու, այլ Տերենտեայ դքսի հրաման տայր ածել մուծանել զՊապ ի Հայս, այսպիսի ինչ զգուշութեան պայմանաւ՝ զի առաջնորդեսցէ Պապ ազգին, բայց զնշանակս թագաւորութեանն եւ զանուն առ ժամն մի կրիցէ, զի մի քակեալ ինչ զդաշինսն Հռոմայեցիքն թուիցին։

Իբրեւ զգաստ լինէր այսմ ամենայնի Շապուհ արքայ, ամենեւին իսկ ի մոլեգնութիւն ելանէր. մեծաւ բազմամբոխ զօրօք քինախնդիր ի Հայս արշաւէր կամ ինքն եւ կամ զօրավարօքն առաքելովք։ Զահի հարաւ Պապ եւ ընդ նմա Կիւրղակն եւ Արտաւան, եւ իբրեւ չգոյին ուստեք թիկունք օգնականութեան, դիմեալ անկան յամուրս լերանց ի վերայ սահմանաց Հռոմայեցւոցն եւ ի լերինսն Խաղտեաց (կամ Լազկեայ կամ Կողքեայ)[1]. անդ ասկաւ գնդաւ վաստակաբեկ առնէին զամիսս 5 զզօրս թագաւորին Արեաց, թագուցեալք ի թաւուտս թանձրախուռն անտառացն եւ խոտորեալք յաղամոզ հետս շաւղաց վայրացն։ Այնուհետեւ յուսահատեալ արկանել զնոսա ի բուռն, եւ զի տայր եւս ամբանւոյն սատակացեալ նեղէր՝ յետ ապականելոյ զամենայն մրգաբերս երկրին եւ զամուր ամուր տեղիսն քանդելոյ կամ առնլոյ[2] զամուրսն Վանայ, զԱրտաշատու, զՎաղարշապատու, զԵրուանդաշատու, զԶարեհաւանայ, զԶարիշատայ[3], տայր ամենայն բազմութեամբ պատեալ պաշարէր զԱրտագերսն բերդ եւ յետ ազգի ազգի կռուոց՝ լուծան լքան ամրականքն (որ ընդ ամենայն զամիսս իբրեւ 14 եղեն ժուժկալ՝ յուսալով մանաւանդ թիկանց օգնականութեան զոր բերիցէ Պապ ի կողմանց Հռոմայեցւոց)[4]. վանեալ մկանդեալ առնոյր զունդն Պարսից եւ հրձիգ արարեալ եղծանէր, եւ զՓառանձեմ զկին Արշակայ արքայի հանդերձ գանձուք տարեալ վարէին ի գերութիւն[5]։

Յասորեստանի ընդ տայլացից հանեալ սպանանէ տիկինն[6]։ Վաղ քան զայն եւ Մերուժան Արծրունի նոյնպիսի անցս էր անցուցեալ եւ ընդ կանայս նախարարացն կախելով զնոսա զբերդից իւրաքանչիւր, քանզի նմա իսկ յանձն էր աշխարհն հրամանաւ Արեաց արքային։

Այնուհետեւ հնարէր խորամանգն Շապուհ փորձել միւսանգամ փայփայելով եւ ծածուկ պատգամաւորութեամբ ի կա-

1 Որպէս եւ մեր եւս պատմագիրք զայն կողմանս Խաղտեաց գիտեն մերձ [illegible] փախստեից. տես Եղիշէ, 231. Բուզ. Դ. Գլ. ԾԹ. ի վերջն։
2 Ամմ. անդ։
3 Խոր. Գ. Գլ. ԼԵ։ Բուզ. Դ. Գլ. ԾԵ։
4 Բուզ. Դ. Գլ. ԾԵ։
5 Ամմ. անդ։ Բուզ. անդ։ Խոր. անդ. Թեպէտ եւ սա ոչ ի բռնութենէ, այլ ի կամաց տալ լինել անձնատուր։
6 Խոր. անդ։ Բուզ. Դ. Գլ. ԾԵ։

կածանս ի վերայ Կիւղակայ եւ Արտաւանայ, եւ գրգռէր իմն զԹագաւորն մանուկ իբրեւ թէ իշխիցեն իմն նոքա ի նորա վերայ եւ առնուէր իմն իշխանութեան նմին թողուցուն։ Իսկ Թագաւորն ի բանս Թշնամւոյ աշխարհին իւրոյ եւ տոհմի եւ զգլուխ արանցն առաքէր առ Շապուհ։

Յետ թօթափելոյ զխրատուս պատանեկին՝ դիւրաւ այնուհետեւ Թագաւորութիւնն հանդերձ Թագաւորաւն իբրեւ աւար կայր առաջի Թագաւորին Պարսից։ Նմին իրի հարկ համարեցաւ կայսր առաքել զԱրինթէ կոմս, զայր քաջ հռոմէական լեգէոնօք ի Հայս։ Բայց Շապուհ քանզի տակաւին չհամարէր զանձն կազմեալ ի մարտ պատերազմի ընդ Հռոմայեցւոց, կոչեաց զզօրսն յետս, որք վաղ սկսեալ էին մտանել միւսանգամ ի ներքս ապստակաւ (370)[1]։ Այլ որպէս հաւանութեան թուի՝ այս իրք յետ միոյ ճակատու դիպեցան որ ի Ձիրաւն կամ ի դաշտավայրին Բագրեւանդայ առ ընդնոստամբն Նպատայ մղեցաւ, առաջի Եփրատ գետոյ, յորում կային առտի Տերենտ եւ Արինթէ, Սմբատ ասպետ որդի Բագարատայ եւ Մուշեղ որդի Վասակայ եւ Սպանդարատ կամսարական, եւ անտի բաց ի պարսկական զօրագլխացն՝ Մերուժան, Ուռնայր արքայ Աղուանից եւ Շերգիր Գեկաց արքայ։ Խառնեցաւ ճակատն սաստիկ յերկոցունց կողմանց. նահատակեցան մանկունք Պարսից եւ Հայոց՝ որոց աւաւէն իմն էր ապարափակն Հռոմայեցւոց։

Ի խառնուրդսն անկաւ Շերգիր ի ձեռն Սպանդարատայ, Ուռնայր հանաւ ի պատերազմէն խոց վիրաւոր ի ձեռաց Մուշեղի, որ չառ յանձն սպանանել զայր Թագաւոր. իսկ Մերուժանայ վիրաւորեալ երիվարն՝ եղեւ ձերբակալ յեղերս շամբի Կոգայովտի ի ձեռն Սմբատայ ասպետի՝ որ ջեռուցեալ շամփուր երկաթի ատրագոյն եւ բոլորեալ պսակ եդ ի գլուխ նորա եւ ասէր. Պսակեմ զքեզ, Մերուժան, քանզի խնդրէիր թագաւորել Հայոց, եւ ինձ՝ զի ասպետս եմ՝ պարտ է զքեզ պսակել ըստ սովորական հայրենի իշխանութեան իմում[2]։ Իսկ Վահան նորին քեռայր վաղ սպանեալ էր յիւրմէ իսկ որդւոյ ի Սամուելէ՝ որ անկաւ փախստեայ ի Խաղտիս։

Բայց զՊապ չէր թողեալ զօրավարացն Հռոմայեցւոց մտանել ի ճակատ անդր, այլ ի Նպատական լեռնէ դիտէր տեսանել Թագաւորն արտաթոռ զկռիւն, ունելով առընթեր զեպիսկոպոսապետն սուրբ զՆերսէս, որ մերթ յաղօթս կայր եւ մերթ յորդորէր զԹագաւորն ուղղել զսիրտ իւր։ Յետ ճակատուն միջնորդ ի մէջ անկեալ սրբոյն՝ տայր խոստանալ Թագաւորին գնալ հայրաբար ընդ նախարարսն, եւ սոցա չվտարանջել. եւ դարձոյց իսկ

1 Ամ. ԻԶ։

2 Ըստ Փ. Բուզ. Ե. Գլ. ԽԳ. յետոյ ուրեմն ի ճակատու ուրեք ի Բաբկենէ նահապետէ Սիւնեաց սպանեալ եղ ի Գա- [illegible]։

աղքայ զամենայն պայազա առաջին Կամսարականաց զոր հանեալ էր հօրն՝ ի Սպանդարատ, իբրեւ պարգեւ քաջութեանն. եւ սպարապետութիւն զօրացն տուեալ հաւատարմութեանն Մուշեղի, եւ առանձինն իսկ քաջն Գնել նահապետ Ռշտունեաց էր զօրավար արեւելեան գնդին փոխանակ Դղակայ որ նախ քան զայն զործ՝ ունէր զմարդպետութիւնն՝ յաջորդեալ զՀայր[1]։

Գրեթէ ամենայնիւ միաբանէ Ամմիանոս ընդ առաջնոյն պատմութեան, մանաւանդ ընդ Փ. Բիւզանդացւոյ՝ յորժամ պատմիցէ սա զանցս պաշարմանն Փառանձեմայ ի բերդին Արտագերից։

Իսկ Կիւղակայ վերակացուի ազգին[2] եւ Արտաւանայ զինուորի[3], որ մի ըստ միոջէ նշանակեցաւ ըստ համեմայեցի պատմագրին մասամբ իմն այս ինքն՝ իսկզբանն ունի նմանութիւն ընդ զործոց Մերուժանայ Արծրունւոյ եւ Վահանայ Մամիկոնենի (որ ըստ առաջին իսկ էր զօրավար)։ սակայն վերջին գործք որ զԿիւղակայ եւ զԱրտաւանայ պատմին ի նմին մատենագրէ՝ ընդ ինչ ամենեւին նման զործոցն որ զՄերուժանայ եւ զՎահանայ ի մերոց անտի վիպին, այլ նման իմն են սակաւ ինչ անցիցն որ զՀայր մարդպետէ եւ զԴղակայ մարդպետէ եւ ապա զօրավարէ՝ առ ի Փ. Բիւզանդայ պատմիցի։ Քանզի զՀայրն յիշէ մատնել զաղա յԱրտագերս բերդ եւ խօսել ընդ դշխոյին Փառանձեմայ եւ գնել եւս նմին թշնամանս, եւ յայն սակս յետ թագաւորելոյն Պապայ լինել զնմանէ ամբաստանութիւն՝ սպանեալ իբրեւ թշնամանիչ մօր թագաւորին։ Այսպէս եւ Դղակ նախ մարդպետ եւ ապա զօրավար ապստամբեալ՝ լինի ի բանի ընդ արքային Պարսից, մատնի, եւ փողոտեալ սպանանի ի Պապայ[4]։

## 126

Իսկ Շապուհ չդադարէր արդեւք յետ առ Ջիրաւ ճակատուն, բայց իսկ եւ իսկ չկարէր առնել սկիզբն տալոյ պատերազմ ընդ Հռոմայեցւոց, այլ կամէր իմն պարապ պատրաստելոյ։ Յայն սակս նախ առաքէր հրեշտակս առ Վաղէս խնդրել՝ չլինել Թիկունս օգնականութեան աշխարհին Հայոց ըստ դաշանցն պայմանի։ Ձեռն ինչ այնմ ունէր կայսր, մանաւանդ զի եւ ինքն իսկ Թագաւորն Արեւաց մերժեալ հանեալ էր զարքայն Վրաց զոր Հռոմայեցւոցն կացուցեալ էր ըստ պայմանի դաշանցն որ ի Դաղերեայ ընդ Պարսից երբեմն կռեցան (297), եւ կացուցեալ փոխանակ Սաւրոմակայ զնորին հօրեղբօրորդի զԱսպակուր։ Հրաման ետ Վաղէս Արինթեայ մնալ ի Հայս եւ Տերենտեայ 12 լեգէոնօք

1 Խոր. Գ. Գլ. ԼԵ — Ի։ Փ. Բուզ. Ե. Գլ. Դ։

2 Praefectus gentis.

3 Magister armorum. Ամ. ԻԷ. 12։

4 Թուեսցի եւ ըստ կոչման անուանց եւ ըստ անցից տաւել նմանեն Կիւղակն եւ Արտաւանն Ամմիանու՝ Վաղինակայ (Սիւնեայ) եւ Վարդանայ (Մամիկոնենի) զոր եղեն զինակիցք Մերուժանայ, բայց եղանակ Շապհոյ. եւ սպանանի ի Փառանձեմայ (Խոր. Գ. Գլ. ԽԲ.)։

վճարեցին յաղթութիւն կատարեալ։ Յետ այսորիկ յերկոցունց կողմանց յապաղումն իմն լինէր եւ միայն մանր մանր ինչ ճակատք մղէին՝ երբեմն սոցա եւ երբեմն նոցա յաղթելով։ Իբրեւ այսպէս սպառէր մաշէր ժամանակ ամարայնոյն՝ եղեւ առժամն դադարումն պատերազմին յերկոցունց կողմանց։ Այնուհետեւ երկոքին առաջք Արեւելեան եւ Արեւմտից որք հեռի իսկ էին ի գործոյ պատերազմին՝ դարձան յիւրաքանչիւր տեղիս, կայսր յՀրապաղեայ Ասորւոց յԱնտիոք, եւ Շապուհ (թերեւս ի Խորասանէ) ի Տիզբոն (373)[1]։

## 127

Մինչ դեռ յԱնտիոք էր կայսր՝ սակայն պատգամ առ նա հասանէր ի կողմանց Հայոց աշխարհին վասն Պապայ արքայի։ Տերենտիոս դուքս զօրացն ի Հայս, այր քաջապաշտօն եւ ճշմարտահաւատ[2], կասկածանօք եւ հակառակութեամբ իմն էր ընդ արքային Հայոց, թերեւս վասն տարապարտ սպանման եպիսկոպոսապետի աշխարհին Մեծին Ներսիսի, զոր ինքնին նիւթեաց թագաւորն եւ վասն խանգարման կարգացն լաւութեան, եւ բազումք իսկ ի Հայոց անտի միաբան էին ընդ նմա թերեւս վասն նորին պատճառանաց։ Բայց Տերենտեայ չէր մարթ զբուն պատճառս իրացն մերկանալ առաջի արիանոս կայսեր՝ որ յառաջ քան զամենայն ընդ կորուստ ուղղափառ եկեղեցեացն կամէր։ Շատ համարէր Տերենտ ցուցանել կայսեր զամբարհաւաճութիւն մանկանն թագաւորի եւ զանագորունութիւնն առ հնազանդեալսն իւր եւ զսպանութիւնսն։ Այնուհետեւ հրաւիրեալ կոչէր կայսր զարքայն Հայոց յԱնտիոք պատուով թագաւորաբար, զի միաբան խորհուրդ խորհեսցի իբրեւ ընդ թագաւորի դաշնաւորի ընդդէմ հասարակաց թշնամւոյն ի ժամանակի անդ դադարելոյ պատերազմացն։ Այլ ի Տարսոն Կիլիկեցւոց հասեալ՝ մեծարանաց իմն պատճառանօք պահեցաւ անդէն թագաւորն, ոչ ի բանակ անդր կայսեր կոչէր եւ ոչ զբուն պատճառս փութանակի գալստեանն կարէր իմանալ, քանզի ոչ ոք հանէր նմա ի վեր։ Ապա ուրեմն ծածուկ դուշակութեամբ ի վերայ հասանէր թէ Տերենտն թղթով ազդ առնէ կայսեր աճապարել առաքել զայլ ոք ի թագաւորութիւն Հայոց աշխարհին, զի մի, ասէ, առ ատելութեանն զոր ընդ Պապ արքայ ունին եւ վասն ահին թէ գուցէ դարձցի նա այսրէն յետս՝ ազգ մի այսչափ եւ այսպիսի եւ մեզ կարեւոր անցցէ ի կողմն Պարսից միաբանել ընդ նոցա իշխանութեամբն, որք ի բնէ իսկ ցանկացեալ են յափշտակել զազգն զայն բռնութեամբ կամ ահիւ կամ ողոքով։ Ի միտ առ այնուհետեւ թագաւորն զվտանգն մօտալուտ

1 Ամմ. ԻԹ. Գլ. Ա։

2 Մ. Բարսեղ Թղթ. 99, 175 եւ 250. զդստերս նորա զսարկաւագուհիս ի Սամոսատ՝ կոչէ «պատուական շառաւիղս ի բարեպաշտութեան» (Թուղթ 105 յամի 372)։ Թէոդորետ. Եկեղ. Պատմ. Դ. Գլ. ԻԲ։

հասեալ․ խորհեցաւ հնարս եւ ոչ ինչ պատեհագոյն քան զխաթանակի փախուստն համարեցաւ ըստ խրատու այնոցիկ յորս վստահն էր, եւ ժողովեալ երեքհարիւրոցն ուղեկցաց՝ ընդ երեկս աղջամղջնաց երիվարօք ելեալ ի քաղաքէն աճապարէր կողմագնդովքն։ Ա ահադ վայրացն փութացաւ զկնի եւ աղաչէր դառնալ յետս մինչդեռ յարուարձանեայսն էին, եւ իբրեւ ի բաց դարձաւորն զանգիտեալ ի մահուն սպառնալեաց՝ առաքեցաւ լեգէոն մի զկնի թագաւորին, այլ ինքն իսկ թագաւորն դարձաւ յարձակեցաւ սակաւաձեռն գնդաւն ի վերայ նոցա իբրեւ մօտն հասեալ էին, եւ իբրեւ զկայծակունս այնպէս զնետսն սփռէր գունդն Հայաստանեայց եւ հանէր զնոսա փախստեայս։ Ապա ինքեանք ձեպով եւ մեծաւ սաստիկ աշխատութեամբ ընթացեալ երկուս տիւս եւ երկուս գիշերս՝ այնպէս հասանէին յափն Արածանւոյ։ Իբրեւ չգտին նաւ անցանել ըստ գետն յաղթ, եւ բազումք չէին անկեալ ի լողն գնալոյ եւ մանաւանդ ինքն թագաւորն առաւել քան զամենեսեան տաղտապէր՝ յայնժամ գտեալ նոցա տիկս, քանզի լի էին այգեստանեօք վայրքն, առին կապեցին յերկուց երկուց տկաց վերայ մի մի բազմոցս եւ նստեալ միոյ միոյ յիշխանաց անտի եւ թագաւորին իսկ ի գլխովին՝ անցեալ հասանէին յայնկոյս (որպէս հաւանութեան թուի՝ առաջի Սամոսատ քաղաքի), եւ մնացեալքն ի դասուէ անտի սպասաւորացն հեծեալ ի ձիս ի լող անցանէին մեծաւ աշխատութեամբ՝ լուծեալք, խանդացեալք անդր հասանէին զնոցա կնի։ Անդ իբրեւ առ սակաւ մի ոգի առին եւ արծարծեցան՝ արագագոյնս քան զառաջինն աւուրն փութային։

Անտուստ իբրեւ զգայր զանցս իւրացն կայսր, զմտաւ ածեալ թէ ի թշնամութիւն դարձցի կամ յաւելցէ ի նոյն այնուհետեւ թագաւորն, յորժամ յիւր աշխարհն ճողոպրեսցի, աճապարէր առաքէր հազար մի աղեղնաւորաց հեծելոց թեթեւազինացից զօրավարութեամբ Դանիելի կոմսի եւ Բարզինեռայ հազարապետի վահանաւորացն։ Մինչդեռ թագաւորն իւրովքն հանգերձ շրջանս իւր զճանապարհայն գործէր եւ յերկարէր զշաւիղսն, սոքա քանզի հմուտք վայրացն էին, բաժանեալ յերկուս գունդս ընդ կարճ ճանապարհ կանխեցին կալան զառաջս նորա եւ զգլուխ երկուց ճանապարհացն, զի հարկ էր ընդ մին ի նոցանէ անցանել։ Այլ ամենայն ել ի դերեւ։ Քանզի ոմն յուղեւորաց՝ յետ տեսանելոյ զգունդս զօրականացն՝ պատահեալ Հայոց խոնջելոց վաստակելոց ի ճանապարհէն, ածաւ առաջի թագաւորին եւ ազդ արար զերան գաղտ թագաւորին։ Սա թաքուցեալ զահն՝ առաքէր փաղփաղակի ընդ կողմն աջակողմեան ճանապարհին հեծեալ մի իբրեւ այն թէ վանս եւ կերակուր պատրաստիցէ, եւ յետ սակաւ ինչ միոյ արձակէր միւս եւս հեծեալ ընդ կողմն ձախու ճանա-

պարտէին, որ չէր ինչ անտեղեակ թէ այլ ազգ ընդ այլ յղեցան: Իբրեւ այն յարդարեցան առ ի դարմանողաց զմիւս դարմանաւորացն՝ այնուհետեւ թագաւորն ընդ մեծաւն ընդ որս անցեալ եկեալ էր ուղեւորն՝ նորա առաջնորդութեամբ պատուեալ անցանէր իշխանօքն ընդ դերբուկն եւ ընդ նեղ եւ նուրբ շաւիղն որ եւ դժուարաւ բեւեռակրի անձուկ էր: Այսպէս Մայր զօրն հրամայեալ ի թիկանց թագաւորին, եւ ձեռբակալ արարեալ զապստամբն նորա զհեծեալսն արձակեալս խարխանօք՝ կայլին սպասէին դատարկ զօրութեան թագաւորին իբրեւ որպէս որ վազ դրուեալ փակեալ էջէ: Այլ թագաւորն Հայոց Պապ անդուստ հասանէր ողջանդամ յերկիր թագաւորութեան իւրոյ եւ ընկալաւ զնա ուրախութեամբ աշխարհն: Սակայն կաց նա հաստատուն ի հաւատարմութեան ընդ Հռոմայեցւոց իբրեւ դաշնաւոր նոցա եւ արար զերկանոցն մեռացօնս, եւ թերեւս եւ ինքն եւս Վաղէս թոյլ տայր նմա թագաւորել եւ պաշտպանէր իսկ նմա: Բայց Պապիէն եւ Բարզէմբր իբրեւ խարեալք պատրեալք դարձան ի բանակն կայսերական՝ հանապազ լսէին թշնամանս վատութեան, որպէս թէ զօր ի բանի կայր՝ կորուսին. յայն սակս մատեան ի տկարահոգին անդր կայսերն՝ որ միշտ մէտ ի կասկածանս էր, մանաւանդ ի հնարից դիւթութեան[1]. Վախճանդ է, ասեն, Պապ, եւ արուեստս մէգ զանձամբ պատեալ՝ անց յաներեւոյթս. անհնարին հմուտ է Կիրկէական մագութեանցն առ շրջելոյ եւ խեղելոյ եւ ծնգելոյ զմարմինս մարդկան, եւ ամենայնէին իմն թէ եւ ինքն կայսր չէ այսուհետեւ յապահով:

Այնմ հետէ անհնարին թշնամութեամբ էր կայսր ընդ Հայոց թագաւորին եւ հանապազ նիւթէր դաւ հնարաւորութեամբ՝ զի կամ բռնութեամբ եւ կամ գաղտ յարուցէ արկանելէ, եւ զիրացն մեքենաւորութիւն ծածուկ իսկ թղթովք առնէր յանձն Տրայիանոսի՝ որ անցեալ կայր յայնժամ ի Հայս փոխանակ Տերենտեայ ի գործ զօրավարութեան գնդին Հռոմայեցւոց: Տրայիան յետ զրուելոյ զմիտս թագաւորին քաղցրութեամբ եւ ողոքով, մերթ տալով թուղթս ողջունացոյցս ի կայսերէ լի բարեկամութեամբ եւ մերթ ինքնին ի խրախուսս թագաւորին բազմելով, եւ այնպէս յետ ուրեմն յօրինեալ յարդարեալ զամենայն մեքենայս դաւուն՝ մեծարանօք ի ճաշ հրաւիրէր: Եկն թագաւորն յանդէտս եւ անց բազմեցաւ ի տաճարին խրախութեան ի պատուական բարձին: Իբրեւ ընթրիք համեղակամացն առաջի եղան եւ տունն մեծ հնչէր ի ձայնէ բարբառոյ աղեացն նուագարանաց եւ փողոցն արբնգաց եւ իբրեւ ընդ գինիս մտին, ինքն կոչնատէրն (կամս Տրայիանոս) պատճառանօք ի բաց եղ ի հացէն, եւ անդէն մի ոմն ի բարբարոս զօրուէ սակրաւորացն (՟)[2]

1 Տես վերագոյն էջ 351.

2 Suprae.

զէն վերացուցեալ յարձակէր հարկանել զԹագաւորն՝ մինչ դեռ բազմեալն էր, զի գուցէ սրանայցէ ի բաց։ Զայն իբրեւ ետես Թագաւորն՝ ուղղեցաւ ի բազմականէն եւ հանեալ զերանն՝ յոտն եկաց պաշտպանել անձինն ամենայն զօրութեամբն. այլ հարեալ Թափանցանց ընդ կուրծսն անկաւ տապալեալ՝ ծակոտեալ պատառեալ եւ ի հարուածոցն կրկնելոց։ Փրփրէր սփռէր արիւնն ի սեղանոյն զարդարելոյ եւ ցրուեցան ի բաց բազմականքն զարհուրեալք (374)[1]։

Այսպիսի իմն օրհասիւ վախճանէր Թագաւորն մանուկ՝ որում համակ ջատագով մնեալ արդարացուցանէ հռոմէական պատմագիրն, հակառակ վկայութեան տոհմային պատմագրութեանն՝ որ նախ ապստամբեալ զնա դնէ ի կայսերէ։ Այլ որպէս ինչ եւ իցէ իրքն՝ տակայն լի էր անիրաւութեամբ նենգաւոր գործ սպանմանն «յընթիրս անդ՝ որ եւ Աքսինոսն (հիւրընկալն) Պոնտոս, ասէ պատմագիրն, ակնածելի է»։ Այն իսկ մանաւանդ աղէտք են զի այնպիսի այր որպիսի Տրայիանոս կոմս էր, լինէր գործի հնարաւորութեան անագորոյնն եւ կասկածոտն կայսեր, եւ գտանէր նմանող Մարկեղիանեայ ումեմն՝ որ յարեւմուտս զԳաբինիոս զարքայ Կուադաց անդէն ի նմին ամի (374) ետ սպանանել ի հացի։

Զկծեցան զայրացան նախարարք Հայոց ընդ մահ Թագաւորին արշակունւոյ, եւ անդէն իսկ ի հացին Գնել նահապետ Ընձեւացեաց եւ սպարապետ արեւելեան գնդին յոտն կացեալ ջանայր խնդրել զվրէժ Թագաւորին իւրոյ ի սպանչացն, եւ յետ գործոյն վճարելոյ գումարեցաւ խորհուրդ աշխարհօրէն զգլխաւորութեամբ Մուշեղի սպարապետին եւ Հայր մարդպետին. եկաց այս բան ի խորհրդեանն՝ անցանել կալ լուռ, քանզի նոյն մի ինչ համարէին ի Հռոմայեցւոց ի բաց կալ եւ Պարսից հեթանոսաց ի ծառայութիւն ստրկութեան մտանել[2]։

Այսպէս Ամմիանոս զՊապայ, որում բազմօք մանաւանդ վասն գթնակի մահուն նորա միաբանին Փ. Բուզանդացի[3], նա առաւել եւ Մ. Խորենացի

1 Ամ. Լ. Գլ. Ա։

2 Փ. Բուզ. Դպր. Ե. Գլ. ԼԳ։

3 Փ. Բուզ. Դպր. Ե. Գլ. ԼԲ։ «Յայնժամ, ասէ, զխորհուրդ մի խորհեցաւ Թագաւորն Յունաց առ իշխանսն զօրացն իւրոց (առ Տերենտիոս եւ առ Ադէ), եւ հրաման տայր սպանանել զԹագաւորն Հայոց զՊապ։ Եւ եղեւ իբրեւ ընկալան զայս հրաման ի Թագաւորէն Յունաց իշխանքն իւր՝ որ էին ի Հայոց երկրին, սպասէին ժամու ի դէպ՝ սպանանել զԹագաւորն Հայոց զՊապ։ Եւ եղեւ ի գիշերի ժամանակի իբրեւ գիտացին Տերենտիոս եւ Ադէն զօրավարքն զօրացն Յունաց՝ թէ միայն է Թագաւորն Հայոց Պապ, եւ ամենայն մեծամեծքն եւ զօրքն Հայոց չէին անդ, եւ էր Թագաւորն Հայոց Պապ բանակեալ ի գաւառին ի Բագրեւանդ գաւառի ի Խու անուն աւանին, եւ բանակ զօրացն Յունաց բանակեալ էր անդէն մօտ առ բանակին Հայոց արքային, ապա զօրավարքն Յունաց հաց մեծապէս գործեալ՝ յընթրիս հրաւիրեալ կոչեցին զմեծ Թագաւորն Հայոց զՊապ մեծապէս լաւ պատուասիրութեամբ նորա, որպէս արժան էր զայր Թագաւոր ի հաց մեծ կոչել, եւ ամենեւին կազմութիւն պատրաստութեան։ Իսկ եկեալ Թագաւորն Պապ յընթրիսն, մտեալ բազմեցաւ յուտել եւ յըմպել։ Եւ իբրեւ մտանէր արքայն ի խորանն Տերենտի զօրավարին Յունաց, եւ լինէին սպառազէնք հետեւակքն վահան ի ձեռն, սակուր զգօտւոյ, բուրդ ի ներքոյ զգեստուք խորանին պատեալ պահէին. այնպէս եւ արտաքոյ կողմէն ի ներքոյ կուռ վառեալք եւ ի վերայ հանդերձս զգեցեալք պատրաստականք։ Իսկ Թագաւորն Պապ համարէր ի միտս իւր թէ ի պատիւ ինչ նորա զայն առնիցեն։ Եւ մինչ դեռ ընթրիսն առնէր,

չէ հերք ի ժամանակագրութենէ համայեցի պատմագրին, այնու՝ զի եւ առ Նմա հաշուելով զամս թագաւորացն Հայոց ի Ներսէսէ ի վեր՝ մահն Պապայ անկանի մօտ աւուրեամբ յամի 376։ Սակայն եւ այնպէս՝ ըստ պատմութեանն ոչ միայն յերկուց (յարտաքին եւ ի տոհմային) պատմագրաց անտի, այլ եւ յայսմ իսկ ի սեպհական ժամանակագրութենէ իւրմէ օտարանայ՝ դնելով զՊապ համեմատ ժամանակացն Թէոդոսի Ա., այսպէս։

Յետ մահուն Արշակայ Բ. աղաչէ, ասէ, եպիսկոպոսապետն Ներսէս զկայսր Թէոդոս՝ օգնականութեամբ Հռոմայեցւոց թագաւորեցուցանել Հայոց զորդի նորա զՊապ. գայ Տերենտիանոս սպարապետ զօրու ծանու ի Հայս, բերելով զՊապ ընդ իւր եւ մերժի անտի Մերուժան Արծրունի որ գրաւեալ կալեալ էր զերկիրն։ Շապուհ Բ. զչարեալ գումարէ գունդ հարուստ ի ձեռն Մերուժանայ, առաքէ եւ Թէոդոս այլ գունդ ստուարագոյնս զլեգէոնսն ի Հայս եւ այսպէս կատարի կռիւն եւ յաղթութիւն ի Ձիրաւական դաշտին՝ առաջնորդութեամբ Տերենտիանոսի, Ադդէի կոմսի եւ Գորգոնտի իշխանի հեծեալ զօրուն։ Վաղ մոռանայ Պապ զերախտիս կայսերն Թէոդոսի. ի ժամանակի խռովութեան իւրոյ ի Թեսաղոնիկէ (որոյ ստոյգ թուականն է 390)՝ նշկահէ զնա, զՏերենտիանոս լեգէոնօք պահապանօք Հայոց ի բաց հալածէ։ Գառնայ այսրէն Տերենտիանոս հրամանաւ Թէոդոսի, յանկարծ անկանի ի վերայ բանակին Հայոց, առնէ կոտորակս զգլուխ Գնելոյ նահապետի Անձեւացեաց սպարապետի արեւելեան զօրուն եւ ըմբռնէ զՊապ։ Անկանի յաղերս առաջի զօրավարին թագաւորն Հայոց՝ մի անդէն սպանանել, այլ յանդիման կացուցանել զնա կայսերն. շնորհէ Տերենտիանոս, յանդիման լինի Պապ առաջի Թէոդոսի ի շղթայս եւ գլխատի սակրով[1]։

Այլ յայտ ի համօրէն ընթացից պատմութեան է՝ թէ չէր հնար Թէոդոսի Ա. առնել գործ ընդ Շապհոյ Բ., եւ ոչ էր նորա այնպիսի զօրութիւն ի Հայոց աշխարհին, Տերենտիանոսն (Տերենտն Փ. Բուզանդացւոյ կամ Տերենտիոսն Ամմիանու), որպէս եւ Ադդէն (Ադէն Փ. Բուզանդացւոյ կամ Արինթէն Ամմիանու) էին զօրք ի Հայս եւ ի Վիրս (որպէս տեսաք) ոչ առ Թէոդոսիւ Ա. (յետ 379 ամին) այլ առ Վաղեսիւ նորին առաջին աթոռակալաւ։ Թէպէտ եւ Գորգոնտն դեռ կենդանի էր առ Թէոդոսիւ Ա. այնու զի յիշի նա ի Թէոդոսեան մատենին իբրեւ վերակացու կայսերական կալուածոց (յամի 386), սակայն Տերենտն եւ Արինթէ վախճանեալ էին վաղագոյն՝ անկանելով ի ճակա-

տակրաւոր զօրքն ի թիկանց կուսէ նորա կարգեալք պատկեալք կային շուրջ զնովաւ յամենայն կուսէ։ Իբրեւ ընդ գինիս մտին, որպէս զառաջին ուրախութեանցն ձայնսն մատուցին առաջի Պապայ, եւ առ հասարակ թմբկահարք եւ սրնդահարք, քնարահարք եւ փողահարք իւրաքանչիւր արուեստք պէսպէս ձայնիւք բարբառեցան։ Եւ վահանաւոր լեգէոնին հրաման եհատ. եւ մինչ դեռ թագաւորն Պապ զուարթութեան գինին ունէր ի մատունս իւր, եւ նայէր ընդ պէսպէս ամբոխ գուսանացն, ահեակ ձեռամբն յարմուկն՝ յոր յեցեալ բազմեալ էր՝ ունէր ապշա սակի ի մատունս իւր, իսկ ալ ձեռանն եդեալ էր ի դաստապան նրանին՝ զոր կապեալ էր յաղու ազդերն իւրում, եւ մինչ դեռ բերանն ի բաժակին էր յըմպելն, եւ աչքն յառաջ կայր պշուցեալ հայէր ընդ պէսպէս ամբոխ գուսանացն, հրաման լիներ ակնարկելով զօրացն Յունաց։ Եւ լեգէոն սակրաւորքն երկու ի թիկանց կուսէ կային ի սպառուս սակրիմբ վահանօքն, յանկարծօրէն կից ի վեր առեալ զակուռսն՝ զարկանէին թագաւորին Պապայ. մին կշխա զուլն հարկանէր սակրաւն, եւ միւսն եւս սակրաւորն զալ թաթ ձեռինն՝ որ կայր ի վերայ դաստապանին նրանին՝ հարկանէր կտրէր եւ ի բաց ընկենոյր։ Անդէն ի բերանս տապալէր թագաւորն Պապ. եւ գինին տաշտին եւ արիւնն պարպացին նովաւ հանդերձ ի վերայ բաժակաց ակնեցն անկանէր, եւ անդէն սատակէր թագաւորն Պապ։ Ընդ շփոթելոյ տաներին խռովութեան...»։

1 Խոր. Գ. Գլ. ԼԸ—ԼԹ.

տու անդ ընդդէմ Գոթաց առ Ադրիանուպօլեաւ (յամի 378) ընդ իւրեանց կայսերն ընդ Վաղեսի եւ ընդ 35 զօրավարան։ Այս յայտ ուրեմն է յամենայն կողմանց՝ թէ միայն Վաղեսի ժամանակացն կշռի ժամանակ (6—7 ամեայ) թագաւորութեանն Պապայ, որով երթեալ կցեալն ընդ ժամանակի թագաւորութեան հօրն իւրոյ ըստ նորագ. հաշուին որ վերագոյն ընծայեցաւ։

Յետ Փառներսեհի (Փառենայ՝ ըստ Փ. Բուզ.) առնոյր զեպիսկոպոսապետութիւնն սքանչելին Ներսէս Մեծն, թոռն Յուսկանն, յԱթանագինեայ՝ որ ընդ եղբօրն իւրոյ Պապայ մերժեցան ի կարգէ եպիսկոպոսապետութեանն վասն վարուցն անարժանութեան։ Լեալ Ներսիսի ի հրահանգս ի Կեսարիա Գամրաց (ըստ միաբան վկայութեան Փ. Բուզ. եւ Մ. Խորենացւոյ) ունէր գիտութիւն ուղղէչ եռանդեանն՝ որով եկն ի նորոգութիւն եւ ի յարդարումն եկեղեցական կարգաց աշխարհին. եղեւ նա զօդ միաւորութեան երկուց թագաւորացն Հայոց աստի՝ ընդ իւրեանց նախարարացն եւ անտի՝ ընդ գլխաւորաց հռոմէական պետութեանն։ Անցք պատմութեան նորա են կից ընդ պատմութեանն Արշակայ Բ. եւ Պապայ եւ ընդ ուղղութեան ժամանակաց նոցա ուղիղ եւ տրայն։ Յերկոցունց տոհմային պատմագրաց պատմի դեղով ի Պապայ վախճանեալ, ապա մօտ ուրեմն յամին 373—374։ Զաքսորել նորա ի Վաղեսէ ի կղզի մի անբնակ եւ զդառնալ անտի հրամանաւ կայսերն Թէոդոսի եւ լինել ի տիեզերական ժողովին Կոստանդնուպօլսոյ (381)՝ ոչ ժամանակագրութիւնն առնայանձն եւ ոչ արձանագիրք անուանց ժողովոյն այնորիկ, որոց անհնար էր չցուցանել զանուն նորա, որպէս արձանագիրք Նիկիական ժողովոյն ցուցանեն զանուն Արիստակեսայ, որ առաւել անծանօթագոյն իմն անուն ի Յոյնս էր։

Այլ իբրեւ փոխարէն իմն նմին՝ գտանեմք զՍ. Ներսէս ի Կեսարիա Գամրաց յամի 371 կամ 372 ի ժողովի (32) եպիսկոպոսաց առ սրբոյն Բարսղիւ, զի յանուանէ յիշատակի նա ի միաբանական թղթին առ Դամասոս քահանայապետ Հռոմայ եւ առ եպիսկոպոսունս արեւմտից զի առաքեսցին աղք՝ որ եկեալ յարդարեսցեն զիրս եկեղեցեացն արեւելից, ածելով ի միաբանութիւն զեպիսկոպոսունս յետ այնչափ արիանոսական գժտութեանցն[1]։

## 128

Վասնզի չգոյր Պապայ որդի հուժկու, աճապարեաց կայսր Վաղէս առաքել Հայոց թագաւոր զոք արշակունի, եւ ուրախութեամբ ընկալան զնա Հայք (374)։ Սա էր պատանեակն կորովի Վարազդատ արշակունի եղբօրորդի Պապայ (ըստ Փաւստ. Բուզանդայ). առանց իրիք տարակուսանաց է՝ թէ Վարազդատ

1 Ի Թուղթս Ս. Բարսղի՝ 69։ — Տես եւ վերագոյն եջ 345—346։

էր զոր փոխանակ Պապայ պահեալ ի Տիրան՝ կամէր առաքել ի Հայս Վաղէս, յառաջ քան զամ մի կամ երկուս։ Այր նորա լեալ յաշխարհին Հոռոմոց երեւելի ի բանամարտիկս եւ ի զազանամարտի ի Պիսաս Խաղքիացւոց եւ ի Հեղիուպոլիս Եգիպտացւոց եւ ի սահմանակողմանս արեւմտից ընդդէմ գերմանական ազգաց (Գոնդոքարաց)։ Զնոյն արութիւնս քաջութեանց եւ յերամ աշխարհին ցուցանէր ի թագաւորութեանն զհետ աւազակաց անդրեալ ի գծուարս Դարանաղեաց եւ վարէր զնի նոցա զԵփրատաւ՝ յարժամ զունդ աւազակացն սրանայր առաջի նորա՝ խարտակելով զկամուրջն ընդ որ անցին, եւ զարհուրեալ աւազակացն՝ զէնընկէց ի ձեռն եկին[1]։

Արքայ Շապուհ ի վերայ առաջնոց իւրոց աղետիցն լուեալ եւ զմահն Պապայ՝ զոր մեծաւ իսկ խնամով ջանացեալ էր ածել զիւրեւ, տրտմէր տխրէր ի կոր կործանէր։ Եւ իբրեւ զայն եւս զգայր թէ զօրանայ իմն զօրն հռոմէական ի մէջ Հայոց աշխարհին՝ գլխաւորութեամբ Տրայիանու բանակեալ (ի Բագրեւանդ), քանզի ոչ միայն ճոխութիւն մեծ էր զօրավարացն Հոռոմոց ի վերայ նորոյ թագաւորին, այլ եւ ըստ խրատու Մուշեղի նոցին զօրավարաց հարցեալ զկայսր՝ հասանէր հրաման ամրացուցանել զաշխարհն անպատսպար յերեսաց Պարսից, շինելով մէն մի քաղաք յիւրաքանչիւր գաւառի եւ բազմացուցանելով զբերդսն մինչեւ ի Գանձակ Ատրպատականի, եւ զբազում յազատաց եւ ի շինականաց զինուորեցուցանել կայսերական թոշակօք[2]. ընդ այս ամենայն զարհուրեցաւ թագաւորն։

Տրտմէր զանցիցն Պապայ առաջի կայսեր ոչ կարէր, այնու զի զնոյն անցս եւ ինքն ընդ նորին հայր անցոյց։ Նմին իրի զայնմանէ լռեալ՝ այլ ինչ մեծամեծ խորհուրդ ի միտ արկանէր. զԱրշակ կամ զԱրբշակ դեսպանութեամբ առ կայսր առաքեալ՝ խրատ տայր զթագաւորութիւն Հայոց աշխարհին իբրեւ ամենայն իսկ աղետից եւ չարեաց պատճառ՝ զայն բառնալ ջնջել ի միջոյ. եւ եթէ այդ, ասէ, չթուի հաճոյ, ապա գոնեայ դադարեսցէ այսուհետեւ բաժանումն թագաւորութեանն Վրաց յերկուս, եւ ի բաց եղեալ զօրուն Հռոմայեցւոց՝ որ ի պաշտպանութիւն Սաւրոմակայ ի Վիրս կայ՝ թագաւորեսցէ յայսմհետէ միահեծան Ասպակուր զոր իւրն թագաւորեցուցեալ էր։ Բայց Վաղէս տայր պատասխանի թէ զայժմու համաձայնս երկոցունց թագաւորութեանցն չկարեմ փոփոխել, մանաւանդ զի վասն իրացս այսոցիկ վաղ իսկ համաձայնութեամբ երկոցունցն կողմանց դաշինք ի մէջ հաստատեցան, եւ հին պայման եւ պատշաճ է պահել ճշդիւ զուխտ դաշանցն (ի վախճանի ամին 374 կամ ի սկզբան 375 ամին)[3]։

1 Խոր. Գ. Գլ. Խ։
2 Փ. Բուզ. Պատմ. Ե. Գլ. ԼԴ։
3 Ամմ. Լ. Գլ. Բ։

Իսկ Սմբատակեանն, Թէպէտեւ փոյթ զի ժամանակ ի պատերա-ստութիւն պատերազմին կամէր շահել, գրէր այսրէն պատգամ պատասխանւոյ բարբառելով մեծարանս եւ պատճառելով մնա-ցորս. չեմ եւ չէ հնար, ասէ, զժամանակաց կարել արժանապէս՝ Թէ ոչ եկեսցեն կացցեն ի մէջի այրք որ ականջալուր եւ ականա-տես զինուոր գաղանեցն են՝ զոր ես ընդ Յովհաննու եղի. քանզի գի-տէր Շապուհ թէ բանդուակք ի նոցանէ ի կենաց վախճանեցան։

Ի փոխանս իմն անկաւ Վաղէս, եւ խորհուրդ ի մէջ առեալ՝ հրաման տայր Վիկտորեայ մարզպանութեան հեծելոցն եւ Ուրբի-կիանոսի հրամանատարի (դքսի) զօրացն Միջագետաց երթալ վաղ-վաղակի ի Պարս, յայտ առնել առաջի Թագաւորին թէ զինչ որ պարծիւր արդար եւ չարաչար լինել, եւ ոչ օտարին ինչ իրաց ցանկանալ՝ այլ յետ բարձուր անգամ խռովութիւն Հայոց աւելցի Թողուլ զնոսա ըստ իւրեանց սահմանադրութեանն եւ օրինաց՝ համակ զհեռ պնդեալ գործել առէպ զարան, եւ դաշնադրեալ թէ չկարէ կայսր Թողուլ առանց պաշտպանութեան զՍաւրոմակէն, եթէ ալքաոյ ինչ այն լինիցի։

Արդար իմն էր այն յայտարարութիւն եւ ոչ հեռի ի պատուոյ համեմատական պետութեանն։ Այլ այն չեղեւ իրացն լուծումն, եւ հրեշտակք Հռոմայեցւոցն գտան տկարադոյնք, քանզի առանց զինուոր հաղցանելոյ՝ ընկալեան զաւառս ինչ ի գաւառաց Հայոց աշ-խարհին, սակաւս յոյժ, զոր մատոյց նոցա Թագաւորն իբրեւ բա-ժանելով իմն զաշխարհն յիւրեանս, զի յայնմհետէ մի խառնեսցի կայսր յիրս մնացելոց մասանց Հայաստան աշխարհին եւ Վրաց։ Այլ անդէն իսկ եւ իսկ յետ դարձի հրեշտակութեանն հասանէր յարքայից արքայէ Սուրէնն՝ որ էր երկրորդ Թագաւորութեանն Պարսից, մատուցանել զնոյն գաւառս եւ կայսեր։ Թէպէտ եւ մե-ծաւ շքով եւ առատութեամբ եղեւ ընկալեալ հրեշտակն, բայց դարձաւ ձեռնունայն, քանզի մերժեցաւ խնդիր նորա ի կայսերա-կան ատենեացն (375)։

Տայր պատրաստել այնուհետեւ կայսր Վաղէս կազմութիւն մեծ պատերազմի՝ զի զարնայնի եկեալ արշաւանաւ ի Պարսս ընդ երիս առաջս երեքումբք գնդօք, եւ անճապարեալ վարձէր զօրս ի Սկիւթացւոց (այս ինքն՝ ի Գոթաց)։ Իսկ Շապուհ արքայ իբրեւ ի գերեւ ելեալ տեսանէր զամենայն՝ որում մնոտի յուսոյն ունէր ակն, անհնարին ի բարկութիւն բրդէր. եւ իբրեւ լսէր թէ արշա-ւել պատրաստի կայսր, արհամարհեալ իմն զնա, գործ ի ձեռն տայր Սուրենայ երթալ դրաւել, եթէ հարկ ինչ իցէ եւ զօրու-Թեամբ զինու, զնահանգսն Հայոց զոր Վիկտոր կոմս եւ Ուրբիկիոս յանձն առին Թողուլ նմա, եւ զգունդս Հռոմայեցւոցն որ ի պաշտ-պանութիւն Սաւրոմակայ արքայի Վրաց կային՝ նեղել բազում եւ մերժել անտի զՍաւրոմակ։ Նա ըստ հրամանին նոյնպէս եւ ար-

դիւնքն կատարեցան վաղվաղակի (376)։ Սակայն գործ պատերազմին յերկուց կողմանց պատգամաւորութեամբ յամէր։ Վասնզի որպէս թերեւս ծերութիւնն եւ երկեւղ տատանելութեան զօրութեան Հռոմայեցւոցն խափանէր զԹագաւորն Արեաց, նոյնպէս զՎաղէս՝ շարժումն եւ դղրդումն մեծ ի մէջ Գոթաց ազգին, որ ի Թրակիա դիմէին, արգելոյր ի բախելոյ։ Իբրեւ գոյժ անհնարին ի կողմանց Թրակացւոց հասանէր, մինչ չեւ երթեալ անդր՝ ամենապարէր առաքէր առ արքայ Շապուհ զՎիկտոր մագիստրիանոս հեծելոցն՝ զի ըստ պահանջելոյ ժամանակին զրաւ իւրոցն արասցէ, եւ այնպէս անօթալից դաշամբք Հռոմայեցւոցն լինէր վախճան հակառակութեանն, եւ կոմս Տրայիանոս իսկ առեալ զլեգէոնսն որ ի Հայոց աշխարհին էին՝ խաղայր այնուհետեւ ի Թրակիա ի վերայ Գոթաց, եւ այսպէս թողու Հայաստան ի ձեռս զօրութեանն Պարսից (376)[1]։

Ոչ Ամմիանոս, ոչ Իւնապիոս եւ ոչ Զոսիմոս որ զայսց զաշանց յիշեն[2] ասեն ինչ ճշգիւ զպայմանացն, սակայն կարգ բանիցն Ամմիանու եւ կարգ պատմութեանցն որ զկնի՝ ցուցանեն թէ առ Շապուհ յանօթալից դաշինս անդ զՀայաստան աշխարհ որպէս պահանջէրն, զոր եւ վաղ ի նմին ամի գրաւեալ իսկ էր ի ձեռն Մուրենայ։

Այլ զինչ յայնժամ ի դէպ էր անցանել ընդ Վարազդատ՝ Թագաւոր կացուցեալ ի կայսերէ։

Մ. Խորենացի՝ որ զսկիզբն եւ զկատարած (Կամսայ) Թագաւորութեանն Վարազդատայ դնէ առ Թէոդոսիւ Ա., ամբարտաւանեալ յարութիւնս իւր՝ ոչ հնազանդէր, ասէ, խրատու վերակացուաց զօրացն Հռոմայեցւոց, նա եւ ընդ Շապհոյ Բ. խօսէր հրեշտակութեամբ դարձուցանել զաշխարհն ի Պարսիկս։ Ազդ լինի զօրավարացն Հռոմայեցւոց՝ որոց հրամայէ կայսր Թէոդոս Ա. առաքել առ ինքն զՎարազդատ ակամայ՝ եթէ ինքնին չյօժարի գալ։ Երթեալ երթայ Վարազդատ, բայց կայսր եւ ոչ անգամ արժանի առնէ զԹագաւորն Հայոց, այլ շղթայակապ առաքէ ի Թուղէս կղզի։ Այսպէս երկու Թագաւորք Հայոց մահուամբ կամ գրեթէ մահուամբ պատժին ի Թէոդոսէ Ա։ Յետ այնորիկ իսկ եւ իսկ առաքէ զերկուս որդիսն Պապայ զԱրշակ եւ զՎաղարշակ զօրօք եւ զօրավարօք հանդերձ՝ Թագաւորել ի միասին, որք եւ տան մարտ պատերազմի ընդ Պարսիկս մեծաւ քաջութեամբ։

Սակայն այս դրութիւն պատմութեան է անհնարին ի հակառակութեան ընդ ընթացից տիեզերական պատմութեանն։ Նախ զի ըստ ժամանակագրութեանն ոչ միայն Արշակայ, ոչ միայն Պապայ (†374), այլ եւ ոչ Վարազդատայ ամս չորս Թագաւորելոյ (374—377) տակաւին գոյ հնար ունել ինչ տուրեւառ ընդ Թէոդոսի Ա. որ յամի 379 եղեւ կայսր։ Ի դրութեան սոսա՝ հակառակ հաւաստական պատմութեան՝ լեգէոնք եւ զօրավարք Հռոմայեցւոց ի Հայս են գտնեալ ցամն 378, ուր նոքա վաղ ելեալ էին անտի յառաջ քան զամս երիս ի ժամանակի զի կորանաց դաշինքն կաէին։ Դարձեալ ի սմին դրութեան Հայաստան՝ ոչ միայն մինչեւ ցամն ցայն, այլ եւ յետ այնորիկ կայ միայն բովանդակ եւ

1 Ամմ. Լ. Գլ. Բ. եւ ԼԱ. Գլ. Է։ 2 Եւնապ. Քաղ. Հրեշտ։ Զոսիմ. Դ։

անդնդհատ ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց եւ չցուցանի ի մէջն ժամանակ անկրելոյ Պարսից համօրէն աշխարհին։ Նա եւ համօրէն իսկ նկարագիր գործոյն չէ ինչ այնչափ յանկ բարուցն Թէոդոսի։

Նաեւ հարկ է յայլ իմն դրութիւն պատմութեան դիմել՝ որ առաւել միաբան հռոմէական պատմութեան իցէ։

Ըստ Փ. Բուզանդացւոյ, Վարազդատ՝ որ սպան զպարապետ կամ զգլխաւորն իւր զՄուշեղ նահապետ Մամիկոնեանից կամ ի քսութենէ դայեկին իւրոյ Բատայ Սահառունւոյ՝ որ ակն եդեալ էր իշխանութեան նորա, եւ կամ ունելով քէն ընդ Մուշեղ իբրեւ ընդ պատճառ մահուան հօրեղբօր իւրոյ Պապայ, մերժեցաւ յաշխարհէն Հռոմոց ի պարտութիւն մատնեալ առ կարնով յապստամբ կողմանէն հակելոյ ի Պարսիկս գլխաւորութեամբ Մանուէլի եղբօր Մուշեղայ, որում աջակից էր Բաբիկ նահապետ Սիւնեաց։ Այսպէս մերժի Թագաւորն առեալ ի կայսերէ. քանզի (ըստ սմին առհմային պատմագրի) զօրք Հռոմայեցւոցն չէին անդ, զի յետ Պապայ՝ չյերկարեցին նոքա շատ մնալ անդէն[1]։ Սմին համեմատ են եւ ընթացք արտաքին պատմութեան (առ Ամմիանու), քանզի առաւ առաքեալ կայսեր զՎիկտոր եղթալ վճարել զիրս դաշանցն ընդ Շապհոյ յամի 376՝ անատուստ արձակէր իսկ եւ իսկ զՊրոփուտուրոս եւ զՑըռպիանոս լեգէոնօքն որ ի Հայս էին՝ ընդդէմ Գթաց ի Թրակիա[2]։

Յառաջ մատուցեալ առէ նոյն առհմայն պատմագիր թէ յետ զՎարազդատ մերժելոյ՝ անկաւ ընդ ձեռամբ Պարսից՝ աշխարհն, որդիք Պապայ առկուսին անհատակաշարք՝ ստանէին ընդ խնամակալութեամբ մօրն իւրեանց Զարմանդխտոյ, առաքէր ի Շապհոյ Սուրէն "պարսիկ մի ձոխ ի նախարարաց," 10,000աւ՝ յարդարել զիրս Հայոց աշխարհին իբրեւ մարզպանութեամբ, եւ շահել զսիրտ տիկնոջն արքունական պարգեւօք։ Նոյնպէս եւ Ամմիանոս կամ ի վերջ կոյս նորին ամի (376) եւ կամ ինկզբան 377 ամին առէ առաքել Շապհոյ զՍուրէն՝ այնպէս զի առանց պատերազմի նուաճեսցէ ընդ ձեռամբ զերկիրն, բայց միանգամայն հազմութեամբ զէն ի գործ արկանելոյ՝ եթէ եղիցի դիմադարձութիւն, եւ արդեամբք իսկ, առէ, ա՛ռ ի բուռն զերկիրն վաղվաղակի եւ մնաց իսկ այնպէս ընդ ձեռամբ նորա վասն հանդամանաց իրացն Հռոմայեցւոց[3]։ Արդ ըստ համեմատութեան երկոցունց պատմագրացս 3 կամ 4 ամք թագաւորութեանն Վարազդատայ, որպէս ինչ ասյ նմա Մ. Խորենացի, զետեղին կարի քաջ ընդ մէջ ամացն 374՝ յորում նստաւ, եւ 377՝ յորում մերժեցաւ Վարազդատ։

## 129

Յետ մերժելոյ Վարազդատայ՝ թագաւորեցին հօրեղբօրորդիք նորա Արշակ Գ. եւ Վաղարշակ Բ. կամ լինելով մերջնոյն իբրեւ երկրորդ առաջնոյն (ըստ Փ. Բիւզանդացւոյ) եւ կամ հաւասար (ըստ Մ. Խորենացւոյ), կամ իսկ եւ իսկ յետ (աքսորանացն) Վարազդատայ (ըստ Մ. Խոր.) եւ կամ յետ ամս ինչ սակաւ կալոյ ընդ խնամակալութեամբ մօրն իւրեանց Զարմանդխտոյ եւ

1 Բուզ. Ե. Գլ. Լէ։
2 Ամմ. ԼԱ. Գլ. Ե։
3 Ամմ. Surenae dedit negotium ut ea ... armis repeteret, si quisquam repugnaret... Haec ut statuerat maturata confestim, nec emendari potuerunt nec vindicari, quia rem romanam alius circumsteterat metus totius Gothiae Thracias licentius perrumpentis.

ընդ առաջնորդութեամբ Մանուէլի Մամիկոնեան եւ Բաբկեան Սիւ-
նեաց նահապետի, առնլով Արշակայ կնութեան զդուստր Բաբ-
կան (ըստ Փ. Բիւզ. զՎարդանդուխտ՝ զդուստր Մանուէլի), եւ
Վաղարշակայ՝ զդուստր Սահակայ ասպետի: Վաղարշակ վախճա-
նէր յետ տարեւոր թագաւորութեանն: Յետ ամաց ինչ թա-
գաւորութեանն Արշակայ՝ լինէին դաշինք Պարսից ընդ Հռոմայե-
ցւոց (Թէոդոսի Բ. ընդ Շապհոյ Գ.) վասն Հայոց աշխարհին,
բաժանելով զաշխարհն ընդ երկուս՝ յարեւմտեան եւ յարեւե-
լեան, թագաւորութեանն մնալով ի բաժնին Հռոմայեցւոց, եւ
ունելով քաղաք գլխաւոր զԿարին: (Քանզի ըստ Մ. Խորենացւոյ՝
լաւ համարեցաւ Արշակ ընդ քրիստոնեայ իշխանաւ լինել, եւ դար-
ձաւ՝ զի ի Հռոմայեցւոց սահմանաց անտի էր մայրն): Իսկ կողմն
պարսկային առաջնորդէր այնուհետեւ պարսիկ մարզպանաւ: Բայց
զի բազումք ի նախարարաց այսր կողմանն սկսան դալ ժողովել առ
Արշակ արքայ ի բաժնի Հռոմայեցւոցն, նմին իրի հարկ համարե-
ցան այնուհետեւ արքունիքն Տիզբոնի կարգել թագաւոր քրիս-
տոնեայ արշակունի ի բաժնի անդ իւրեանց՝ զԽոսրով Գ. զԹա-
գաւորն Արտաշատայ, ունելով քաղաք գլխաւոր զՎաղարշապատ
կամ զՆոր քաղաք: Հրովարտակաւ երդման հրաւիրեալ կոչեցան
նախարարք դալ առնուլ իւրաքանչիւր զիւր արարս, սպառնա-
ցեալ՝ զչեկեալսն դատապարտս գրաւել յարքունիս[1]:

Միամտեալ կացին մնացին առ Արշակայ սնընդակիցք ար-
քային եւ մերձաւորք, Գարա որդի Բաբկան տեառն Սիւնեաց ա-
ներոյ նորա՝ սպարապետ իւր, Գազաւոն որդի Սպանդարատայ
տեառն Շիրակայ եւ Արշարունեաց եւ Պերոզ յազգէն Գարդմա-
նացւոց, թող զայլս յայլեւայլ նախարարութեանց որ ի նոսին
յարեալ էին: Իսկ այլքն ամենեքին ելին խաղացին պարէն յիւրա-
քանչիւր ժառանգութիւնս՝ որ էին նոցա ի բաժնին Խոսրովու:

Թէպէտ եւ չզարձաւ ինչ նոցա ընդդէմ Արշակ արքայ եւ ոչ
արգել զոք, այլ եթող զնոսա ազատ երթալ ի կոչ Շապհոյ՝
որպէս էր իսկ խոստացեալ սմա, սակայն վաղվաղակի յայլ ինչ
կերպարանս իրքն շրջեցան, եւ անկաւ թշնամութիւն երկոցունց
բաժանաւոր թագաւորացն ընդ միմեանս:

Սահակ ասպետ աներ Վաղարշակայ, որոյ երկիր կալուածոց
էր ի բաժնին Հռոմայեցւոց, կրեալ արհամարհանս յԱրշակայ,
քանզի դրդէր զսա տիկինն Սիւնի ընդդէմ ասպետին՝ որպէս թէ
զարդ արքունական ունի սա ի փեսայէն իւրմէ մնացեալ, եւ զի
քսութիւն եւս սուտ զնմանէ մատուցաւ յազգականաց իւրոց ի
Սպեր գաւառէ, անկաւ ապստամբ առ Խոսրով: Մեծարեալ ի
նմանէ եւ առեալ կալուածս ի ժառանգութենէ նախարարացն այ-
նոցիկ՝ որ ի բաժնոյն Պարսից առ Արշակայ մնացին, կարգեցաւ

1 Խոր. Գ. Գլ. ԽԲ.

գամանան) պղտոր իմն է։ Ցետ Վաղարշապատայ մերժելոյ՝ է համօրէն աշխարհն ընդ իշխանութեամբ Պարսից։ Արքայորդիքն որդիք Պապայ՝ են ընդ խնամակալութեամբ մօրն իւրեանց արշակունւոյ Զարմանդխտոյ եւ ընդ դայեկութեամբ տանն Մամիկոնեանց եւ Սիւնեաց, եւ մարզպան պարսիկ ունի առ ժամն զտեսչութիւն աշխարհին։

Յայսմ իրաց հանգամանս՝ ձեռս տան Հայք միաբանգամ ի Հռոմայեցիս։ Լինի աշխարհաժողով ի Կարին եւ կացուցանի Արշակ ընդ եղբօրն թագաւոր ընդ հովանաւորութեամբ Հռոմայեցւոց ի վերայ համօրէն աշխարհին։

Յետ սակաւ ինչ միոյ միաբանգամ զօրանայ պարսկային կուսակցութիւնն՝ որ ձեռս առեալ ի Պարսիկս, խնդրելով ի Նոցանէ թագաւոր զոք արշակունի՝ ընդ ձեռամբ պարսկային տէրութեանն։ Առաքի Խոսրով պատանեակ արշակունի ի Հայս զօրօք։ Սակայն այնուհետեւ Արշակ թագաւոր դաշնաւոր Հռոմայեցւոց եղանել ի կողմանս Եկեղեաց՝ ապաստանել յօգնականութիւն Հռոմայեցւոցն։

Այնուհետեւ կայսր եւ արքայից արքայ խօսին դեսպանութեամբ ընդ միմեանս, լինին դաշինք ի մէջի եւ բաժանի աշխարհս ընդ երկուս, յերկուս թագաւորս բաժանաւորս, յԱրշակ՝ որոյ փոքր բաժինն էր, եւ ի Խոսրով՝ որոյ մեծ էր բաժինն, մին ընդ Հռոմայեցւոց եւ միւսն ընդ Պարսից իշխանութեամբ։

Մ. Խորենացի ոչ երբեք թողու զհայաստան ի ձեռս Պարսից, Փ. Բիւզանդացի՝ երկիցս թողու, մի յետ մերժմանն Վաղարշապատայ՝ ըստ բովանդակ մասանց, եւ միւս՝ առ Արշակաւ Գ. միով մասամբն. նա առաւել իմն մարզպանութիւն յետ դաշանցն դնէ, եւ առ Նոյնպիսի ինչ մարզպանութիւն յետ Վաղարշապատայ՝ յառաջ քան զԱրշակ Գ.։ Փ. Բիւզանդացի այսմ եւեթ երաշխաւորութիւն ստուգութեան ունի՝ զի յետ Վաղարշապատայ դնէ զհայաստան ընդ ձեռամբ պարսկային տէրութեան յամս ոչ սակաւ։

Նա ոչ դոյզն ինչ Նպաստ ի լուսաւորութիւն պատմութեան եւ ժամանակագրութեան Հայոց լինի արտաքնոցն մատենագրութիւն։ Թեկնի ի մէնջ Ամմիանոս՝ թողեալ մեզ վկայութիւն թէ յետ 376 ամին սեւեաց Հայաստան ամս ոչ սակաւ ի Նմին հանգամանս, Պարսից ճնշեալ անդէն եւ Հռոմայեցւոց թողեալ անպաշտպան՝ չկարացեալ զինուք առնուլ զիրաւունս իւրեանց՝ ցորքան ժամանակս ի Գոթաց պատերազմունսն զբաւեալ էր պետութիւնն, այս ինքն՝ ցամ 382 (ցերրորդ ամ Թէոդոսի Ա.)[1]։ Ի դիպող իմն ժամու հասանէ մեզ ի թիկունս միւս եւս արտաքին մատենագիր՝ Թեմիստիոս փիլիսոփոս եւ ճարտարախօս, սինկղիտիկոս ժամանակակից ի Կոստանդինուպօլիս, որ հաստատագոյն արարեալ զբանն Ամմիանու առաւել եւս ճշդէ՝ ի ճառին զոր ի սկզբան 383 ամին առաջի Թէոդոսի Ա. խօսեցաւ։ Հայք, ասէ, (որպէս եւ Վիրք) ի սկզբանէ թագաւորութեանն Թէոդոսի Ա. էին զէն ի ձեռն թշնամիք տէրութեանն Հռոմայեցւոց, եւ առկաւին (ի սկզբան 383 ամին) չեն Հայք ընդ իշխանութեամբ Հռոմայեցւոց. սակայն գոյ յոյս ընդ հուպ ընդունելոյ զնոսա այսրէն, եւ այն՝ առանց արեան, քաղցրութեամբ, որպէս սովորութիւնն էր Թէոդոսի Ա.[2]։ Ցընթացս Նորին ամի

1 Տես վերագոյն եղ 515, ծան. 3։

2 Թեմիստ. ճառ ԺԶ. «Հայք... (Արժեցին յինքեանց, կամ) ընդդէմ դարձան (προβεβλήνται) հռոմէական պետութեան։ ... Որպէս Սկիւթացւոց (Գոթաց) առանց արեան եւ արտասուաց յաղթեցաք, այսպէս եւ զՊարսիկս ոչ յետ բազմաց (οὐκ εἰς μακράν) ածցուք զմեզ. այսպէս եւ զՀայս ընկալցուք միաբանգամ»։

ի հինգերորդ դաս նախարարացն, եւ թողութիւն վասն զնուաճի ազգին Կամսարականաց եւ Ամատունեաց, որ ձնատակարն համարեալ էին, զի մնասցեն այսրէն ի ժառանգութիւն հարցն կալուածոց, բայց առանց գահուց հայրենականաց։ Այսր ամենայնի կատարումն յանձն լինէր հրովարտակաւ Արտաշրի (կամ Վռամայ) առ թագաւորն Հայոց (393—395)[1],

Մեսրոպ ի Հացեկաց գեղջէ Տարօն նահանգի, ծնեալ յամի 361 († 441, 13 Մեհեկանի) ի հօրէ՝ որոյ Վարդան անուն էր․ աշխարհ ծնընդեանն եւ հօրն անուն (զի է անուն սեպհական տանն Մամիկոնենից) յայտ առնէ՝ թէ ի Մամիկոնեան տոհմէ էր Մեսրոպ։ Նա եւ սա վարժեալ ի մանկութենէ ի յունական հրահանգս, (ըստ Մ. Խոր.) ծնեալ եւ ուսեալ առ Ս. Ներսիսի (կամ ի դպրոցսն կարգեալ ի նմանէ)։ Առ Արշակաւ Գ. էր յարքունիս իբրեւ ատենադպիր, եւ առ Խոսրովաւ Գ. թողու զարքունիսն տուեալ զանձն վարուց միայնակեցութեան։ Յետ զօրանալոյ կրթական ուսմամբ դպրոցի վանականութեանն՝ ելանէ ի քարոզութիւն, շրջելով ընդ համօրէն աշխարհն, ի գաւառէն Գողթան՝ ուր տակաւին կայր հեթանոսական խմորն եւ հնչէին ցուցք նախնեացն հեթանոսականք, ի Սիւնիս, ի Վիրս եւ յԱղուանս։ Այս ուրեմն հայերէն նշանագրացն գիւտն (406) դնէր զհիմն տոհմային ուսման՝ ոչ միայն վասն ժամանակին իւրոյ, այլ եւ վասն դարուց բազմաց։

Առ հանդարտ եւ իմաստուն թագաւորաւ ոգի առ աշխարհն Հայոց եւ անդէն ներքուստ ի ներքս՝ լռելով անդադար հակառակութեան նախարարութեանցն ընդ միմեանս եւ ընդ թագաւորին։ Գործէր նա ձեռն ի ձեռն ընդ եպիսկոպոսապետին եւ ընդ համօրէն կղերականաց՝ որոց էր պատուադիր[2], օգնական էր նա նոցա ի կրթութիւն բարոյից ազգին եւ ի յստակութիւն կրօնից ջնջմամբ հեթանոսութեանն։ Նա սատար եւ յառաջացուցիչ դպրութեան ազգին իւրոյ հոգաբարձութեամբ գիւտի հայերէն նշանագրաց եւ կարգմամբ դպրոցաց սահմանելով զծախսն յարքունուստ։ Մայր թէ եւ զկրթութիւն պայազատին իւրոյ եւ որդւոյ հաստէր նմա հանել ի գլուխ։ Խնդրեալ նորա ուստր մի զԱրտաշէս տասնամեայ՝ վախճանէր խաղաղութեամբ, յետ Խոսրովայ Բ. լեալ առաջին եւ վերջին թագաւոր Արշակունի՝ որ մեռանիցի անշարժ յաթոռ միահեծան թագաւորութեանն՝ յոր միանգամ եւ (414)։

131

Խոսրով Գ. որ անդստին յամէ 395 արձակեալ ի կապանացն կայր ի նմին բերդի՝ դարձաւ յաթոռն՝ երթալով ի դուռն Յազկե-

1 Խոր. Գ. Գլ. ԾԱ․ 2 Կորիւն․

Գ.

Վասակ Սիւնի մարզպան, Վարդան Մամիկոնեան, ընդ Յազկերտի Բ. ածել զՀայս ի դէն Մազդեզանց, աշխարհաժողով յԱւարայր (450), դիմադրութիւն Հայոց ընդ է յետս, ճակատ յԱւարայրեան դաշտին (451)։ Կալանումն նախարարացն եւ արձակումն (452—464)։ — Կրկին ընդ Պարսից ածելոյ զՀայս ի մոգութիւն, դիմադրութիւն եւ պատերազմունք Վահանայ, յաղթումն արքունեացն Պարսից (յամի 482), մարզպանութիւն Վահանայ (484)։

# 132

Ի ԲԱՌՆԱԼ թագաւորութեանն Հայոց՝ այն ինչ եւ ի գլուխ ելր յ200 ամաց հետէ նուաղեալ հնարէր հարստութիւն Սասանեանց։ Բայց այս ոչ եթէ սոցա ինչ առաւելագոյն զօրութեամբ եւ կամ նոցա տկարութեամբ դիպեցաւ, այլ զի երկոքին կողմանք՝ ներքինքն եւ արտաքինք կարկառեցին ձեռն ի միմեանս ի մի միաբանութիւն, իւրաքանչիւր վասն անձանց շահու։ Ընդ նոյն հաստատութիւն Հայոց թագաւորութեանն՝ որոյ միահեծան-ազնուապետական առաջնորդութիւն էր, ի միաբանութեան նախարարացն ընդ միմեանս եւ ընդ թագաւորին կայր։ Սակայն փոխ իսկ նախարարքը՝ որոց բարձք եւ պատիւք եւ աստիճանք ի թագաւորէ անտի զսկիզբնն ունէին, առաւել մեծացան սահմանօք, զօրութեամբ, ամուր ամուր քաղաքօք եւ բերդիւք. հպարտացոյց զնոսա եւ հնութիւն ազնուականութեան նոցա. եւ այնպէս չէին ինչ զարմանք թէ գայցեն նոքա բազում անգամ ի վէճ ընդ իւրեանց թագաւորին։ Ըստ նմին համեմատութեան վարեցաւ, նուազեաց պատիւ մեծարանաց տոհմին Արշակունեաց եւ նշմարեցաւ թէ երբեմն թագն նոցա եւ աթոռ՝ առանց ձեռաց նոցա։ Ոստանայքն Արշակունեաց տեսին զանձինս բարերարս եւ երախտաւորս ազգի եւ տանն Արշակունեացն։ Նա առանձին ըմբռնումն՝ իսկ թագաւորացն եւ ժամանակք ինչ անիշխանութեան ցուցին նոցա եթէ թագաւորի առանց նոցա չմարթի լինել, այլ քաջ մարթի նախարարացն՝ առանց թագաւորի։ Եւ որք ընդդիմութեամբ կամ խնդրովն իւրեանց սովորեցան դնել թագաւոր, ընդելեալ չհամարեցան ինչ օտար մերժել զնոյն կամ խնդրել բառնալ ի միջոյ։ Ըստ յետոյ յայն չափ իրքն հասին՝ զի ոչ պատիւ ինչ եւ ոչ բարձ առանց միջնորդի կարէին ընդունել ի թագաւորէ անտի իւրեանց (անդստին ի ժամանակէ անտի Վռամշապհոյ), ոչ մեծ ինչ պատուհաս կամ սաստ, այլ թագաւոր նոցա էր բուն յարքունիս Տիզբոնի։ Զհարկ աշխարհին՝ զոր թագաւորն հանեալ տայր, կարէր հանել այնուհետեւ մարզպանն՝ որ էր բազում անգամ հայ յազգէ, զայրուձին՝ սպարապետն նոյնպէս հայ, եւ այլքն եւս մի ըստ միոջէ. եւ այսպէս գրեթէ ստուեր իմն թուէր այն՝ որ ի միջոյն բարձաւ։

Թէպէտ և այսպէս տուեր թագաւորութեանն էր որ ի մէջ բարձաւ, և ներքին զօրութիւն Հայոց աշխարհին այնպէս հզօրագոյն էր ի բարձման թագաւորութեանն՝ որպէս դուն ուրեք յառաջագոյն առ թագաւորութեամբն լեալ, սակայն և այնու՝ զի որոշեալ էր գաւառաւն միայն առհմին Արշակունեաց, կայ և տանձ կայր փառասիրութեան բազմաց: Նմին հակառակ յետ անկանելոյ ազգին Արշակունեաց ի բաց՝ ըստ առաւելուլ յաւաց թագաւորութեանն՝ յաճախեցին հրապոյրք, որք բաւական էին զըրգռել շարժել զերեւելիս ի նախարարացն՝ նմին անկանել զհետ, և իւրաքանչիւր իսկ ի խոնարհագունից նախարարացն ջանային ի բարձրութիւն՝ տեսեալ թէ խախտեալ քայքայեցաւ առաջին դասաւորութիւնն և ամենայն կայր կախեալ զհաճոյից արքունեաց Արեաց աշխարհին:

Գիտացին և արքունիքն Տիզբոնի փարել սովին ներքին հանգամանօք աշխարհին, և ածել այնուհետեւ զգործ միաւորութեանն ի կատարումն բովանդակութեան՝ ձգելով զնոսա յօրէնս տէրութեանն: Շապուհ Բ. որ յիւրում ի բուն աշխարհին հալածէր մոլեգին զքրիստոնեայս (330—366 և 378, 379) երկուցեալ զանգիտէր զնոյն ընդ Հայս ցուցանել, մինչ չեւ հաստատութեամբ տիրեալ աշխարհին: Թագաւորքն սոքա՝ որ յետ Ներսեհ կացին, մեղմագոյնք էին, նմին իրի և չեն ինչ զարմանք Արտաշրի տալ Հայոց թագաւոր զՎռամշապուհ և Վռամայ Գ. փարել ընդ նմա սիրով ի սպառ, և Յազկերտի Ա. որ ի բնէ մտագոյն ի քրիստոնեայսն էր և ի մոգուց անտի անսաստուած կոչեցեալ՝ տալ զԽոսրով միւսանգամ ի թագաւորութիւն ըստ Հայոց խնդրելոյ: Այլ ի վերջին ամս յորժամ դառնացաւ նա ի վերայ քրիստոնէից (յամի 418) աւերելով Արքայ եկեղեցեաց ատրուշան մի յաշխարհին Պարսից, թագաւորեցոյց զիւր որդի զՇապուհ ի վերայ Հայոց՝ զի տարեւորիւք, խորտակութեամբք և խռովութեամբք ի դեն Մազդեզանց զաշխարհն արկանիցէ: Բայց յետ քառեամ անարգաբար թագաւորելոյ՝ զրգռեցաւ համօրէն աշխարհն և նախարարք ի մարտ պատերազմի ընդդէմ զօրութեանն Արեաց, ապականեցաւ եղծաւ աշխարհն մինչ չեւ նուաճեալ. լերինք և ափափայք լցան փախստէիւք, մինչեւ յետ երից ամաց թողութիւն յարքունուստ լեալ ի Վռամայ Ե. նորոգեցաւ խաղաղութիւնն, և տուաւ Հայոց թագաւոր վերջին: Այն իսկ համառօտութիւն իմն պատերազմին Վարդանանց է և նորին յառաջատիպ նմանութիւն: Սակայն և այնպէս հարկ էր պայազատի նորին թագաւորի՝ Յազկերտի Բ. (439—458 ըստ միաբան հաշուի մերոցն մատենագրաց) զնոյն գործ միւսանգամ փորձել յետ բառնալոյ թագաւորութեանն:

Սաղ յամի 421 Վռամայ Ե. գրգռեալ էր մարտ պատե-

մերոց որդւոց ընտանեցուցանելք զնոսա, այնուհետեւ զմեր թագաւորս սիրեն եւ զԱրեաց աշխարհս՝ ի կայսերէ հեռացեալ. եւ յորժամ Հայք սերտիւ մեր լինին՝ Վիրք եւ Աղուանք այնուհետեւ մեր իսկ են։

Գտաւ եւ ի Հայոց աշխարհէ տունն Սիւնեաց օգնական խորհրդոյն Միհրներսեհի։ Ի վաղուց իսկ ի Սիւնիս փոփոխ յաջորդէր կուսակցութիւն Հայոց եւ Պարսից։ Յետ Անդովկայ անտի Արշակայ Բ. Սիւնեաց նահապետի՝ յառաջ մատուցաւ ի Շապհոյ Բ. Վաղինակ Ա.։ Բաբիկ նահապետ ընդ Արշակայ Գ. էր ի կողմն սորա հանդերձ որդւով իւրով Գաբաղիւ։ Ի վերջ կայս երրորդ եւ ի սկզբան չորրորդ դարու ունէր զիշխանութիւնն Վաղինակ Բ. որ իբրեւ միաստակար յաջորդնիս, թերեւս իրաւամբք, ասպանաւ։ Այսպէս անց իշխանութիւն առհմին (յամի իբրեւ 410) յեղբօրորդի անդր ի մանուկն Վասակ, որ բազում իմիք առաջ ունէր առն։ Սիրելի էր լեալ ամենեցուն, իմաստուն եւ հզօր յառաջնորդութեան եւ անուանի ի համօրէն աշխարհին։ Նոյնեւ նա օգնական որդւոյ վարդապետին Մեսրոպայ յառաքելութեան նորա ի Սիւնական աշխարհին, ցուցեալ առ նա հպատակութիւն իբրեւ որդի առ հայր. կարգեցան անդէն դպրոցք ի հրահանգս մանկտւոյ. նա աւանիւ եւ սկիզբն իմն մատենադարանի ի Գետշուքանի[1] նշմարեալք[2]։ Եթէ արդարեւ, որպէս երեւի իսկ յեաց զնմանէ ամբաստանութիւն, էր լեալ գործակից կործանման հօրեղբօր իւրոյ, չէր ինչ երկբայութիւն թէ առժին իբրեւ հանդիսիւ հաւատարմութեան առաւել եւս հաճոյ եղեւ յաջորդին պատանեակն շոյտ եւ խորագէտ, այնպէս զի յետ Վեհ-Միհրշապհոյ՝ յանձն եղեւ նմա մարզպանութիւն Հայոց աշխարհին[3]։ Այսպէս անցեալ կայր նա բարձու ի վերոյ քան զամենայն նախարարս Հայոց աշխարհին։

Այլ անդէն յիւրում տանն պղտորեալ խանգարեցաւ ամենայն։ Վարազվաղան սիւնի նորին փեսայ գժտութեամբ էր ընդ դստերն նորա եւ յայն սակս հան մերժեաց զնա Վասակ յաշխարհէն[4]։ Վարազվաղանայ հասեալ առ հազարապետն Արեաց՝ ամբաստան զաներոյն, եւ ինքն դարձեալ ի դէն Մազդեզանց՝ խորհրդակից եւ գործի հազարապետին կցորդէր, զի թերեւս յապստամբութիւն աներն դրդուեսցի եւ նուաճեալ մերժեսցի յիշխանութենէն։

Այլ զտանուտէր Սիսական աշխարհին վաղ մերկացուցեալ էին փառացն տենչանք. ոչ միայն յայնպիսի ազնուական արա-

1 Խոր. Գ. Գլ. Ժ։
2 Կորիւն. «Յորում ժամանակի պարգեւեալ յԱստուծոյ՝ հասանէր ի գաւառ իշխանութեանն Սիւնեաց քաջն սպասաւորն Վասակ. այր խորհրդական եւ հանճարեղ եւ յաստուծոյ. ընդհանուր իմաստութեամբն Աստուծոյ»։
3 Եղիշէ. Փարպ.։
4 Աղուէն յառաջ քան զամն 447 աղեռ ամփոփի ի յառաջաբանէ կանոնաց Շահապիվանի։

թիւն դիմադարձութեան չէր զանձն պատշաճեալ, այլ եւ ժամ պատեհ առաջի արկելոցն յանկութեանց եւ գեղեցիկ դէպս զերծան համարեցաւ՝ խաղալ մեւս եւս քայլ յառաջ հասանել ի կատարեալ բարձրութեանն: Տակաւին կենդանի իսկ էին յիշատակք տոհմային թագաւորութեանն. ընդ վատասակացն յուրացութիւն զաշխարհն ածելոյ՝ անվրէպ վարձս զթագաւորութիւն Հայոց աշխարհին անձինն խոստանայր այս Մեհրուժան երկրորդ:

Այն էին եւ այլ եւս պատուականք ի նախարարական ցեղիցն. այրն բարեպաշտօն եւ հզօր ընչաւէտութեամբ՝ Վահան Ամատունի հազարապետ, որ իբրեւ զհայր համարեալ էր աշխարհին, քաջն Արշաւիր Կամսարական եւ Ներշապուհ Արծրունի. այլ առաջնորդ ոք պիտոյ էր նոցա դնել զդէմ նիւթելոցն: Տոհմք Բագրատունեացն եւ Մամիկոնեանց ընդ երկուս բաժանեալ էին: Տիրոց ասպետ (յաջորդ Սմբատայ Գ. յասպետութեանն) իշխան պարսկայինն Բագրատունեանց Տարօնոյ (ուրոյն ի Յունական Բագրատունեաց Սպեր նահանգի) շահեալ էր ի կողմն իշխանին Սիւնեաց: Յունականն Մամիկոնեանք հանդերձ համօրէն Սասունքն Հայք էին ի խաղաղութեան հուսակալութեամբ Վասակայ Մամիկոնենի, ընդ իշխանութեամբ Թէոդոսի Բ. եւ Մարկիանոսի: Ամենայն յոյս էր այնուհետեւ ի վերայ տոհմին Մամիկոնենից՝ որ ի պարսկային Հայաստանի գրաւեալ ունէին զքաղաքն տատանի. գլխաւոր տեղի նոցա էր Շահապիվանն: Վարդան Բ. որոյ ընդ քաջութեան հայրենի տոհմին՝ էր եւ նախանձ հաւատոց մայրենի ազգին իւրոյ, ունէր ի ժամանակին զտանուտէրութիւնն (անդստին յամէ իբրեւ 433), ունելով օգնական զեղբարսն իւր զՀմայեակ եւ զՀամազասպեան, որք առհասարակ վայելեալ էին ի կրթութեան մայրենի հաւուն իւրեանց Ս. Սահակայ[1]:

## 133

Այսպիսի հանդամանք իրաց էին Հայոց աշխարհին՝ յորժամ հաստատեցաւ ի խորհրդեան թագաւորին պատճառանօք արշաւանին Քուշանաց կոչել զայրուձի իւրաքանչիւր ազգաց քրիստոնէից, մանաւանդ զՀայոցն, եւ այնպէս նախ անզօրս զնոսա կացուցանել, ապա հնարիւք մուծանել զմոգութիւնն: Հրովարտակք առ ամենայն ազգս տէրութեանն՝ Վրաց եւ Աղուանից հասանէին, յորս յետ տալոյ նոցա զաւետիս յաղթութեանն ընդդէմ Հոռոմայեցւոց, յայտ առնէր զսկիզբն պատերազմին ընդ Քուշանաց, եւ կոչէին իւրաքանչիւր ազգք անցնիւր այրուձիով (441): Սոքա թէպէտ եւ զահի հարեալ էին ի բեկանելոյ Հոռոմոց առաջի նոցա, սակայն եւ այնպէս Հայք եւ Վիրք եւ Աղուանք հանդերձ Լփնօք,

1 Կորիւն:

Նոտաւշէխիւք, Կորդուաք եւ Աղձնիւք, նա եւ ի կողմանց իւք Տաճ-կաստանի (Արաբիայ) խաղացին իւրաքանչիւր այրուձիով հասա-նել ի ժամադիր տեղին յԱպար աշխարհ։

Զերկեամ տեւեան ճակատք ընդ Քուշանաց, բայց չկարաց յաղթահարել զնոսա թագաւորն (442—443)։ Իբրեւ ետես թէ յերկարի գործն՝ արձակեաց զզօրն մարզիկ յիւրաքանչիւր տեղիս, զայլս փոխանակ նոցա առ իւր կոչէր՝ նովին պատրաստութեամբ, եւ այնպէս իւր անդէն քաղաք բնակութեան շինեալ՝ ամ յամէ դնէր արշաւանս զամս իբրեւ 7 (443—448)։ Ի նեղ մեծ անկաւ թագաւորն Հոնաց կամ Քուշանաց, աւերեցան եղծան բազում գաւառք նորա, եւ եղաւ պահակ որմապատ, անուանեալ պա-հակն Հոնաց։ Առաքէր այնուհետեւ արքայից արքայ աւետիս ընդ ամենայն աշխարհս, առաքեցան ի զոհս կրակին ցուլք սպիտակք եւ նոխազք գիսաւորք, պսակօք եւ պատուովք մեծարեցան մոգքն եւ մոգպետք։ Վերջին արշաւան թագաւորին (յամի 449 գա-րնայնի) զլուխ իրացն առնէր. փախստեայ եկանէր առաջի բազմա-մբոխ զօրու նորա թագաւորն Քուշանաց ի կողմանս հիւսիսային ա-նապատին, առաքէին ասպատակաւորքն Պարսից՝ գաւառաց, տե-ղեաց, վայրաց. առան բերդք եւ քաղաքք, գերի եւ առ եւ ա-պուռ եւ աւար անծաւ յերկիր թագաւորութեանն Պարսից։

Մինչեւ ցայն վայր գաղտ իմն մեքենայէր գողանալ զմիտս քրիստոնէիցն որ ի բանակին էին. երբեմն յաճախէր պարսաւանս օրինաց քրիստոնէութեան յատենի հրապարակաւ, երբեմն տայր հանդէս առնել այլեւայլ կրօնիցն՝ ընդ մոգութեան եւ ընդ քաւ-դէութեան եւ ընդ այլոց ուսմանց եւ զքրիստոնէութիւն ի ներքս արկանելով, «Հարցէք, ասէր, քննեցէք, տեսէք. թող որ լաւն ընտրեալ կալցուք»։ Եւ յետուստ պատուովք հրապուրէր ապկա-նել՝ նախամեծար զկրտսերն եւ զանարգս քան զաւագն եւ զպա-տուականս առնելով։ Սակայն ազատ էր տակաւին պաշտօն քրիս-տոնէութեանն զոր անդէն ի բանակին կղերականքն յայտ յանդի-մանս կատարէին, նա աւանիկ ընդ ամենայն կողմանս տարածանէր քրիստոնէութիւնն, քանզի յայտնի բռնութիւն չկարէր արկանել ի կիր, այնու՝ զի ոչ համագունդ ի միում վայրի էին մեծամեծք աշխարհացն իւրաքանչիւր (442—448)։

Այլ յաղթութիւն 449 ամին համարձակեցոյց այնուհետեւ գործել աներկիւղագոյնս։ Մոգքն եւ քաւդեայք բարբառէին թէ աստուածքն որ զյաղթութիւնն ետուն՝ ոչ այլ ինչ հատուցումն խնդրեն՝ բայց զաղանդ քրիստոնէութեանն ի միջոյ բառնալ. նմին միաբան էր եւ խորհուրդ աւագանւոյն։ Առաքէին դեսպանք ստի-պաւ առ ամենայն ազգս եւ լեզուս պարսկային տէրութեանն՝ զա-գարել յիւրաքանչիւր օրինաց, արեգական միայնոյ գալ յերկր-պագութիւն, սպաս ունել կրակի եւ զմոգութիւն եւս յայնր մե-

րայ առնուլ յանձն։ Ընդէն ի ներքս պահ գլխոյն առնել զպատուաճին Հայոց, զՎրաց եւ զԱղուանից, եւ հրաման առնէր ի վերայ դռնապանացն լինել՝ զորս յարեւելս գայցեն՝ թողուլ, իսկ յարեւմտից յարեւմուտս արգելուլ զանցսն։ Իսկ եւ յամենայն կողմանց փակէր, արկանէր այնուհետեւ ձեռն՝ տագնապել տանջանօք, կապանօք, անարգութեամբ, նուաստութեամբ թողեալք եւ զծնեալս վայրօք ձմերոցաց, երբեմն ստիպելով ուտել միս յաւելեալ եւ երբեմն զաւմարելով ի նոյանէ զանգս զանգս յերկիր հեռաւոր՝ յանապատն հիւսիսոյ ի մերս պատերազմի եւ անդէն զգազանս մատնելով սրոյ։

Ապաքեցաւ եւ յաշխարհն Հայոց իբրեւ ի գործ արդարեւ Վենշապուհ կամ Մեհ-Վենշապուհ։ Սա զառաջինն եկեալ բերեալ զողջոյն թագաւորին եւ խաղաղասիրութիւն կեղծաւորեալ՝ առնէր աշխարհագիր՝ որպէս թէ թողութիւն հարկացն առնիցէ եւ թեթեւութիւն այրուձիոյն տուհանելոյ։ Այլ արդեանքն՝ 1. եկեղեցին եւ վանորայն հանդերձ կղերաւն որ ազատհարկ էր՝ արկան ընդ արամբ հարկաց։ 2. Հարկ աշխարհին ծանրացաւ կրկին, եւ անհնարին իսկ էին մուտք եւ սակք եւ բաժք եւ հարք լերանց եւ դաշտաց եւ մայրեաց. նա աւանիկ ոչ միայն շէնաց, այլ եւ աւերակաց իսկ։ 3. Արկ բանսարկութեամբ զնախարարսն ընդ միմեանս եւ յամենայն տան յարոյց խռովութիւն։ 4. Գրգռեաց յարոյց ամբաստանութիւն ի վերայ հազարապետութեան Վահանայ Ամատունւոյ հազարապետի աշխարհին, մերժեցաւ նա ի գործոյն եւ ածաւ պարսիկ փոխանակ նորա (Միհրան անուն)։ 5. Եծաւ եւ այր մոգպետ ի գործ դատաւորութեան՝ զի խափանեսցին դատաստանք որ յատեանս եպիսկոպոսացն լինէին։

Իսկ եւ այս ամենայն յարդարեցաւ ի քայքայումն միաբանութեան աշխարհին եւ ի փախուցանել զխնամակալս, ի ցրուել զիշխանականս եւ զի առ ազգասիրութեան փոխանակ գտցեն յօրէնս մազդութեան, այնուհետեւ հասանէր հրովարտակ ի հազարապետէն Արեաց եւ Անարեաց (Իրան եւ Տուրան), յորում առնէր ուսումն զրադաշտական եւ գին մազդեզն, թէ ի միութենէ (ի Զրուանայ, ի Ժամանակէ) եղ երկուորականութիւն արարչական՝ երկուց արարչացն (Որմզդի եւ Արհմենի) եւ արարածոց բարեաց եւ չարի, եւ յանդիմանէր քրիստոնէութիւն՝ իբրեւ վարդապետութիւն հակառակ մոգաց մազդեզն եւ զգայնոց նորա։

Լինէր ժողով յԱրտաշատ նախարարացն եւ կղերականաց (եպիսկոպոսաց, քորեպիսկոպոսաց եւ երիցանց)։ Յ17 եպիսկոպոսացն էին երեւելիք Յովսէփ եպիսկոպոս Այրարատայ կամ Կաթուղիկոսն, Մեղետ՝ Մանազկերտայ, Սահակ՝ Ռշտունեաց, Եղնակ՝ Բագրեւանդայ, Մուշէ՝ Արծրունեաց, Սուրմակ՝ Բզնունեաց (երբեմն հակառակաթոռ Սահակայ), Եղիշէ՝ Ամատունեաց. եպի-

ւերէցք յերիցանցն՝ Ղեւոնդ եւ Խորէն ի Մրենայ եւ այլք. յաւագ փառաւորականաց՝ Եղիան արծրունի: Ի նախարարաց անտի երեւելիք Մամիկոնեանն եւ տէր Սիւնեաց Վասակ, տէրն Արծրունեաց Ներշապուհ, Մաղխազն Վաչէ, Սպարապետն Հայոց Վարդան Մամիկոնեան, երրեմն հազարապետ աշխարհին Վահան Ամատունի եւ այլք, թող զաւագ սեպուհս իւրաքանչիւր տոհմիցն: Միաբանեալք ամենայն բազմութիւնն մեծաւ հաւանութեամբ ի մեծամեծաց ցփոքունս, եւ երդմամբ եդին միաբանութիւն կենաց եւ մահու կալ ի հաւատս ուղղութեանն: Գրեցաւ պատասխանի հազարապետին՝ յայտ արարեալ թէ զպարտս կամակար հնազանդութեան առ տէրս, զոր կրօնք քրիստոնէութեանն պատուիրեն, որպէս ցայժմ՝ նոյնպէս եւ յետ այսորիկ հատուցեն անվրէպ, բայց հրամանաց վասն կրօնից՝ ոչ ձեր ինչ որ տայքդ՝ գայ իշխանութիւն եւ ոչ մեր պարտք հնազանդութեան: Բայց ըստ Եղիշէի՝ բան առ բան ընդդէմ յանդիմանութիւն զրադաշտական վարդապետութեան՝ ցուցեալ զմիութիւն աստուածութեանն ընդդէմ երկուորականութեանն, զարարչութիւն յաշխարհէ, զանձնիշխանութիւն մարդոյն, զսկիզբն չարեացն, զանկումն մարդկութեան եւ զփրկութիւնն, կնքելով այսպէս՝ զի Եթէ տեղին հաւատովք թողուս, ոչ յերկրի այլ տէր փոխանակեմք ընդ քո, եւ ոչ յերկինս այլ Աստուած փոխանակեմք ընդ Յիսուսի Քրիստոսի: Ի քէն տանջանք եւ ի մէնջ յանձնառութիւնք, սուր քո եւ պարանոցք մեր: Եթէ անմահք իսկ էաք եւ մեռանել մարթ էր մեզ, վասն Քրիստոսի սիրոյն՝ արժան էր, այժմ՝ զի եւ նա անմահ էր, եւ այնչափ սիրեաց զմեզ՝ մինչեւ մահ յանձն առ՝ զի եւ մեք նորա մահուամբն ի յաւիտենական մահուանէ ապրեսցուք (ի վերջ 449 կամ ի սկզբան 450 ամին):

Սրտմտեցոյց զայրացոյց զթագաւորին համարձակութիւն գրոյն, դողդեաց զնա եւ հազարապետն. Արքայ, ասէ, չեղանէ ըստ քո հրամանն եւ Հայք կան քեզ ի ծառայութեան, որ մարդ է յերկրի՝ եթէ կարող իցէ քում հրամանիդ ընդդէմ դառնալ: Եւ այսպէս ըստ նորա խրատուն հրովարտակ սպառնալից ի Հայս (որպէս եւ յԱղուանս եւ ի Վիրս) հասանէր՝ կոչել ի դուռն զերեւելիս ի նախարարացն, յանուանէ՝ զՄամիկոնեանն, զսպարապետն եւ զերրեմն հազարապետն, զՆերշապուհ Արծրունի, զԱրտակ Ռշտունի, զԳադիշոյ Խորխոռունի, զԱրտակ Մոկացի, զՄանեճ Ապահունի, զԳիւտ Վահեւունի, զՇմաւոն Անձեւացի: Այլք ի նախարարացն առ թագաւորին իսկ ի կարաւանին կամ ի ձմերոցին էին եւ կէսք ի Հոնաց պահակին ի կողմանս հիւսիսոյ, թող զորս մնացեալ էին անդէն ի Հայոց աշխարհին՝ ոչինչ կարի նշանաւորք: Այնուհետեւ յետ բազում խորհրդոց՝ սահմանեցաւ երթալ անխափան ի կոչն: Նախ էին եւ երթեւեկք պատգամաւորաց երեցունց

կողմանց աշխարհաց՝ Հայոց, Վրաց եւ Աղուանից ընդ միաբանեալ. եդին ընդ միմեանս ուխտ եւ դաշնաւորութիւն։ Պնդեաց քաջալերեաց եպիսկոպոսապետն Յովսէփ զգնացականսն եւ հաստատեալ զնոսա յուխտին՝ յուղարկէր զնոսա օրհնութեամբ։

Առանց մեծարանաց ընկալաւ զնոսա դուռնն եւ ոչ ըստ ավորական մեծարանացն զօրագլուխ ընդ առաջ առաքելով ի Թագաւորէն կամ երկիցս եւ երիցս հանդէս պերճախօսն առնելով կամ զնախնեացն իւրաքանչիւր վաստակս եւ զառն առն քաջութիւն առաջի աթոռակցացն գովելով (450 Փետրուար. — Եղիշ.)։ Զուր յիշեցուցանէին Թագաւորին նախարարքն զժամանակն Շապհոյ Բ. հօր հաւուն նորա, առ որով էր Հայոց ազատութիւն կրօնից եւ զվաստակս նախնեաց իւրեանց առ նմա եւ առ նորին յաջորդսն եւ այժմ զիւրեանցն եւս վաստակս թերեւս լաւագոյն քան զառաջնոցն՝ զզինուորական վաստակսն եւ զլաճախութիւն հարկացն զոր առ սէր նորա առին յանձն։ Մերժեցան եւքն անարգանօք յերեսաց Թագաւորին որ սպառնացաւ նոցա ի Մազդաստան տալ անցուցանել զնոսա, եւ յիւրաքանչիւր աշխարհ առաքել զօրս անթիւս հանդերձ փղօք, եւ զկին եւ զորդիս ի Խուժաստան տալ խաղացուցանել, զեկեղեցիս եւ զվկայարանս քակել քանդել եւ յապականութիւն դարձուցանել։ Այն սպառնալիք քաջաքայեցին զմիտս նոցա. խնդրեցաւ ի Թագաւորէն ժամանակ վասն տալոյ պատասխանի։ Իբրեւ ի դերեւ ել յոյսն շահելոյ զմեծամեծս դրանն ի ձեռն կաշառոյ, այնուհետեւ ի կարուղ անդ՝ յաղթէր խորհուրդ ոմանց ի թուլացելոցն որ եսուն խրատ առ ժամ կեղծաւորել ի պաշտօն ստութեանն. յայն խոնարհեցաւ յետուստ արտասուօք եւ աքանչելին Վարդան՝ ոչ յետ սակաւ դիմադարձութեան։

Զուարճացաւ զուարթացաւ Թագաւորն, տօն մեծ էր արքունեացն, հաշուելով զայն օր լինել անշարժ հաստատութեան Թագաւորութեանն իւրեանց։ Առաքեցաւ աւետիք յարքունիս առ մոգսն եւ մոգպետս աշխարհին։ Ինքն Թագաւորն մինչ չեւ ելեալ ի պատերազմ ընդ Քուշանաց՝ յուղարկէր զնախարարսն, յանձն արարեալ՝ ի գլուխ տանել զկատարումն խորհրդոյն ի միջոց համօրէն աշխարհին։ Բայց զի ոչ առանց կասկածանաց էր, ունէր իբրեւ ի պատանդի զԹագաւորսն Աղուանից եւ Վրաց՝ զՎաչէն եւ զՎաչէ, զբդեշխն Գուգարացւոց զԱշուշայ, եւ զԱրշակ Բ. եւ զԱմիրներսեհ զորդիս Վասակայ իբրեւ զնշանաւորս քան զամենայն Հայոց։ Ընդ նախարարացն Հայոց գումարէր յաշխարհն Հայոց այրուձի եւ ի մոգուց իբրեւ 700 հանդերձ մոգպետիւ, որք մեծաւ խնդութեամբ համագունդ ի տեղեաց տեղեաց խաղային յերկիրն արեւմտից, զճանապարհայն փայտ ընկենուլին, միճակս արկանէին թէ ո՛ր լիցի որում դասու հասցէ յաշակերտութիւն։ Էր նոցա

հրովարտակ արքունի ի ձեռին մինչեւ ցՆաւասարդ գլուխ տարւոյն՝ փակել կնքել զդրունս եկեղեցեաց, զրով համարով տանել զսպասս նոցա յարքունիս, առնել դադարումն պաշտամանցն, եւ չուսուցանել կղերականաց զժողովուրդն, եւ վանականաց եւ հաւատաւոր կուսանաց փոխել զհանդերձիկսն եւ լինել ըստ աշխարհական կարգի։ Ակիզըն առնել կանանց նախարարացն եւ դստերաց ազատացն եւ շինականաց ուսուցանել զուսումն մոգուցն, կարծել օրինաց քրիստոնէական ամուսնութեանն, եւ փոխանակ նոցա ի բազմակնութիւն գալ՝ զի աճեցեալ բազմասցին ազգք Հայոց, դստերք հարանց լինիցին եւ քորք եղբարց. մարք մի եղիցեն յորդւոց, սակայն թոռունք եղիցեն յանկողինս հաւուց։ Պատրուճակք մի զենցին անյաղ, հայրք առանց փանդամի մի զանգցին, ծիւղք եւ քակորկք ի կրակ մի նկեսցեն, ձեռք առանց գոմիզոյ (միզոյ կովու, որում տայ զօրութիւն օրհէն՝ մատեանն Զընդաւշտայ) մի լուասցին[1]։

## 134

Գոյժ իրացն վաղվաղոյն ի կղերէ անտի Հայոց որ ի Տիզբոնն ընդ զօրսն էին՝ առաքեցաւ ի Հայս առ ժողով եպիսկոպոսացն։ Նոյնուհետեւ սփռեցան եպիսկոպոսունքն յիւրաքանչիւր իշխանութիւնս, առաքեցին զքորեպիսկոպոսս ի գեղս եւ յագարակս. դրդեցին ժողովեցին զբազմութիւն արանց եւ կանանց, շինականաց եւ ազատաց, զքահանայից եւ զմենակեցաց, խրատ եդին պնդեցին զամենեսեան. յառաջ քան զամենայն միաբանեալ զնոսա յայն՝ զի ձեռն եղբօր հարազատի ի մերձաւոր իւր լիցի՝ որ անցեալ իցէ ըստ ուխտ հաւատոցն։ Վառեցան կազմեցան Կարքեդոնացիքն քրիստոնեայք, սուր ընդ մէջ եւ վահան ի ձեռին՝ ոչ արանց միայն, այլ եւ կանանց առնականաց։

Նոյնպէս կազմ եւ պատրաստ էր ամենայն՝ յորժամ հաս ի Հայս գունդն (ի Մայ. ամսեան) եւ բանակեցաւ ի Ծաղկոտն նահանգի առ գեղաքաղաքաւն Անգղ։ Յետ 25 աւուր փորձ փորձէր ինքնին մոգպետն մոգօքն՝ յաւուր միաշաբաթուն մտանել զրաւել զեկեղեցին. յարեաւ խռով ի տեղւոջն եւ հազիւ եղեն անձնապուր մոգքն։ Մոգպետն ի գլխովին՝ որ քարկոծեալ հազիւ դարձաւ կենդանի ի վանսն, գրեթէ վհատեալ եւ յուսահատ էր այնուհետեւ ի գործոյն յաջողութենէ. Դէթ ինքեանք, ասէ, աստուածքն եկեսցեն յօգնականութիւն, սակայն չէ հնար օրինացս մոգութեան ի Հայս առնուլ հաստատութիւն. Թող գրեմ եւ ցուցանեմ, ասէ ցմարզպանն, ի դուռն մովպետան մովպետի եւ զերանդերձապետի եւ մեծի հազարապետին, զի ածցեն զարքայ ի հաւանութիւն՝ զի ըստ առաջին օրինակին տացէ ազատութիւն

1 Եղիշէ. էջ 17—89։ Փարպ. էջ 72—94։

օրինաց. քանզի մարդ խոկ է աշխարհս, յորժամ ի մէջ զոյգեան՝ վատնեցին յօտարութիւն,,:

Այլ քաջալերէր զնա իշխանն Սիւնեաց՝ լինել երկայնամիտ-համբեր նա հրոս ի Սիւնական աշխարհէն՝ տառապանացանել զեւղանդ ի թիկունս օգնականութեան մայրենին, եւ զմիւս մարդկանն պատրաստէր՝ շահելով զոմանս կարասեօք բերելով յաղքունեաց, զայլս ողոքով եւ զաւակին սպառնալեօք, յերկարէր զնուազն ուրախութեան մաշելով զերկայնութիւն զիշերոյն ի յուզս, ի գինիս եւ ի կաքաւս լկտութեան, եւ այսպէս հնարէր մեղկել տակաւ զազգն հզօր: Տայր խոկ բաշխել մարս ի տանն տունս նախարարացն եւ կարգել ածիկս առատութեամբ, զոհել պատրուճակս եւ բանաբար տալ ուտել մեզ յաղանց եւ երկիր պագանել արեգական: Ցերեւելի տեղիս շինեցան կրակատունք, որպէս ի Գուրին Շաւասպ Արծրունի եւ Վընոյ Գրունեցի շինեցին ատրուշանս եւ Շերոյ եւ որդի Վընոյ եկաց քրմապետ պաշտաման կրակին: Այլ որպէս հաւանութեան թուէր, ոչ ինչ կարի յայտնի էր՝ թէ այս ամենայն ի մարզպանէն գործի, քանզի եւ արտաքուստ արտաքս ի բարեկամութիւն կեղծաւորէր: Սակայն անվստահ իմն էին ի նա միշտ, ոչ միայն վասն որդւոցն պատանդութեան, այլ եւ վասն առաւելութեան փառացն տենչանաց:

Այնուհետեւ մի միայն յոյս կղերին ի վերայ սպարապետին էր: Սա խոկ եւ խոկ իբրեւ հաս ի Հայս՝ եղանէր տամբ եւ աղխիզնալ փախստեայ յերկիր սահմանացն Համայեցւոց կալ զաւուրս ինչ այս՝ յօտարութեան, այլ տանից խզմի: Սակայն անդէն ի գեղն Ամարանս Բագրեւանդացւոց աշխարհին ի վերայ սահմանացն Բասենոյ զինի հատանէին պատգամաւորք երեւելիք ի նախարարացն (Արշաւիր Արշարունի, Համայեակ Դիմաքսեան, Գադիշ Առեղէն) բերեալ թուղթ ի տեառնէն Սիւնեաց եւ յայլոց նախարարաց եւ յեպիսկոպոսաց աշխարհին՝ պաղատել դառնալ յետս, եւ մի զանձն եւեթ խորհել, այլ զհամօրէն աշխարհին զօգուտն: Կազմ էր ամենայն խորհուրդ ապստամբութեանն, այլ կամէր իմն մարզպանն յապաղեցուցանել զնոսա պատճառանօք վասնզի պատանդացն եւ այլոց նոյնպիսեաց: Սակայն յետոյ յորժամ գեա ի խորհրդեան ուրեմն էին նախարարքն ի վանս սպարապետին ի գաւառին Շահապիվանի եւ չկարէին որոշել ինչ հաստատութեամբ, ժողով բազմութեան եպիսկոպոսացն նեղեալ զիմեցին ի վանս անդր սպարապետին: Անդ երկրորդ անգամ հաստատեցաւ ուխտ միաբանութեան հաւատոց ի մէջ տանուտերանցն եւ եկեղեց: Սահմանեցաւ ժամադիր ժամանակ ի կատարումն խորհրդոյն (Յունիսս ամիս): Մի ոմն յոստանիկ տանէ Զաւանդան անուն որ ընթանեալ էր իբրեւ դուշակ ամենայն խորհրդոցն առ մարզպանն յԱրծակ գեղջ եւ արկեալ ի բանտ ի միւսում գեղջ ի Բերդկանս

ի Նախճն Նախջրեւանոյ գաւառի՝ քարկոծեալ սպանան։ Յետ այնորիկ Համդերձ ստրատելատաւն մերին առ մարզպանն, առաքեցին յայտ առնել զանձն եւ մի այսր անդր ապստամբել։ Յանձն առ մարզպանն կամայ կամ ակամայ, գրէր եւ կնքէր զերդումն եւ կատարէր զաւետարանսն, որպէս եւ ամենեքեան իսկ որոց առակաւին մնացուածեան չեւ էր կնքեալ զաւետարանն՝ կնքէին եւ այլքն յեպիսկոպոսականն[1]։

Այսպէս յայտ եղեւ եւ սփռեցան լուրքն եւ կեդրոնացաւ զօրութիւն մարզպանին ի Նախջրեւանոյ առ Զարեհաւանաւ։ Անդուստ Հայք ի ժամանակի ժամուն եկին ժողովեցան առ Ընդղբերդաւ, յարձակեցան զօրաժողով ի վերայ կրակարանին ի Զարեհաւանի (= Արեշաւան) ուր բազմութիւն մոգուցն էր, քանդեցին ատրուշանն, խափանեցին կրակն, ըմբռնեցին մոգսն եւ տարանան ի նոցանէ ի վաղուն ոչ բազումք։ Նոյնպէս եւ ի Դուին Շահատայ Արծրունի եւ Հազարապետեան սպարապետի Մշկան, Վընդոյ եւ նորին որդի Շերոյ եղեն ձերբակալ։ Այնուհետեւ ապրեալ էին քուրմքն. զինեցին ի վերայ բերդիցն եւ աւանաց զոր Պարսիկքն գրաւեալ ունէին. առաւ Արտաշատ, Դուին, Անի, Արտագերք, Երկայնորդք, Արհնի, Բաղձուղ, Խորանիստ, Դրախտանիստ, Որկան, Արփանեալ, Վանն աւան, Դուեայն, Կապոյտն, Որոտն եւ Վաղարշապատ, Համդերձ աւանօք, գեղիւք եւ ագարակօք իւրեանց։ Զամենայն այս պարսիկ երեւելի՝ պահեցին ի բերդս զգուշութեամբ իբրեւ փոխանակ գրաւելոցն ի Պարս։ Առաքեցաւ ձեպով իսկ եւ իսկ դեսպանութեամբ Ատոմ Գնունի ընդ Հմայեկայ Մամիկոնէի առ կայսր խնդրել օգնականութիւն ցուցեալ զհրովարտակն զոր գրէր "Յովսէփ եպիսկոպոս քաղաքի եպիսկոպոսակցօք եւ ամենայն զօրք Հայոց, Վասակ մարզպան եւ Ներշապուհ Արծրունեան Համդերձ ստրատելատաւն եւ ամենայն մեծամեծ նախարարօք՝ առ մեծանուն Թէոդոս կայսր"․ յիշեցուցեալ թէ որպէս ի բնէ ցանկալի էր Հռոմայեցւոց՝ Հայոց աշխարհ անուանեալ ի նոցանէ դաստակերտ մեծ եւ սիրելի, եւ թէ որպէս փրկութիւն առհմի Թագաւորացն իւրեանց արշակունեաց եւ Թագաւորութիւն իսկ Հայոց ի Հռոմայեցւոց անտի եղեւ, որպէս եւ Համար քրիստոնէութեանն Հայոց ի սրբոց եպիսկոպոսապետացն Հռոմայ, զոր այժմ կամին Հանել ի նոցանէ ազգքն ամբարիշտք։ Յանէին եւ Վահան Ամատունի եւ Մերհուժան Արծրունի եղբայր Արշակայ Թուղթս առ իշխանս Հայոց բաժնին Հռոմայեցւոց,

1 Ըստ Եղիշէի՝ յետ խորհրդոյն ի Շահապիվանի՝ անդէն ի նմին գիշերի վառեցան պատրաստեցան ընդ երիս գնդովքն բաժանեալ՝ յարեւելից, յարեւմտից եւ ի հիւսիսոյ՝ փակեցին ի ներքս զբանակին ստորոտովքն ի Բագրեւանդ, մարզպանն ձերբակալ լեալ վտարանէր ընդ նոսա երդմամբ, անկանէր աղաչաւորութեամբ յոտս եպիսկոպոսացն եւ աղաչէր խաղաղութեամբ՝ մի մերժել նմա ի նոցանէ. կրկնելով եւ երեքկնելով զերդումն առաջի բազմութեանն՝ աղաչէր զի յԱստուծոյ խնդրեսցէ վրէժ եւ մի նոքա մարդկաբար ապստամբեսցեն։ Եւ այնպէս ընկալան զնա այնուհետեւ։

առ բդեշխն Աղձնեաց, առ իշխանն Անգեղ տան, ի Ծոփս, ի Հաշտեանս, յՌշտունեաց, եւ առ այլ իշխանս կողմանցն եւ առանձինն առ Անատողիոս սպարապետն արեւելից յԱնտիոք՝ փութով թիկանց օգնականութեան (մօտ ի սկիզբն Յուլ. ամսոյ):

Բայց պատասխանւոյ հրեշտակութեանցն մնալ չէր ինչ հնարաւորութիւն զինուորութեանն եպիսկոպոսապետն աշխարհին եկեալ հասեալ կայր ի դաշնաւոր աշխարհէն Վրաց թէ գունդ պարսկային ի կողմանց Հոնաց այսր դարձեալ յօգնականութիւն 300 մոգուցն՝ որ սախպեալ տագնապէին ի քրիստոնէութենէ ի բաց կալ եւ զեկեղեցիս քակել: Այնուհետեւ զզօրն Հայոց՝ որ էր այրուձի մեծաւ մասամբ՝ ժողովեալ յիւրաքանչիւր տանէ նախարարութեանցն եւ յազգունս (յատանիկ) տանէ՝ ընդ երիս բաժանէին հաւասարակաց հաւանութեամբ: Գունդն առաջին տուաւ ցՆերշապուհ Արծրունեան՝ գումարեալ ընդ պահապան աշխարհին ի վերայ սահմանաց Ատրպատականի ի Հեր եւ Զարեւանդ գաւառի. զգունդն երկրորդ տանէր Վարդան անցանել ընդ սահմանս Վրաց ի վերայ մարզպանին Ճորայ որ կայր ի վերայ Աղուանից աշխարհին. իսկ զգունդն երրորդ տային ի ձեռս իշխանին Սիւնեաց՝ որոյ էր գումարեալ զիւրեւ զհամախորհուրդն իւրաքանչիւր զօրք:

Մնեալ այնուհետեւ Վասակ կեղծաւորէր լինել դաշնամուտ յամուրս իւրոյ աշխարհին, իբրեւ թէ ընդ նեղուցս ի վերայ պարսկական գնդին յԱղուանս յարձակեսցի, բայց արդեամբք՝ գաղտ լինէր դաշնակ Սեբուխտայ մարզպանին Ճորայ՝ զերաց Հայոց աշխարհին եւ զանկանութենէ գնդին Վարդանայ որ ի վերայ նորա գայր: Ընդ մարզպանն պարսիկ ի կողմանց Ճորայ ընդ Կուր գետ այսր եւ Թագաւորազունք ոմանք կողմանցն ընդ նմա. Վարդան յերիս առաջս զգունդն բաժանէր, զաջակողմն տայր Արշաւրայ կամսարականի իւրում փեսայի եւ նիզակակից նմին՝ Մուշ սեպուհ Դիմաքսեան, եւ զահեակն ցԽորէն Խորխոռունի եւ նիզակակից՝ Համայեակ Դիմաքսեան, եւ զմիջոցն յինքն առնոյր: Ի նահանգի Ուտէացւոց հանդէպ Խաղխաղ քաղաքի ձմերոցի արքայութեանն Աղուանից ի դաշտավայրի խռնեցաւ ճակատն. խորտակեցաւ աջ թեւ Պարսից գնդին, եւ փախստականքն յամուրս մայրեաց առ խորագոյն դարիւք Լփինաս գետոյ կոտորեցան, հալէւ տայէր գուժկան ի մեծ շահաստանն (Վեհշապուհ): Մեծամեծք Պարսից որ ընդ Կուր գետ նաւարկեալ երթային փախստեայ՝ կորեան գետավէժ: Մուշ միայն յերեւելեաց Հայոց թանձրախոր մօրից դիպեալ կորեաւ:

Այնուհետեւ առան մի ըստ միոջէ ամուրք Աղուանից աշխարհին եւ քակեցան ատրուշանքն. այլ առժամ զի եղաւ բիծ յաղթութեանն կոտորելով զերամս մոգուցն: Բնականք աշխարհին

որ վասն աստուածպաշտութեան անկեալ էին փախստեայ յամուրս լերանց Կապկոհի՝ դարձան եւ սուսերացեալ նոքօք գնդին Վարդանայ, խաղացին յորմ անդր պահակին Հոնաց կամ Ճորայ. աւերեցաւ ամրութիւն տեղւոյն զոր Թագաւորին կացեալ էր. հարան պահակապանքն եւ դուռնն ի ձեռն առաւ Վահանայ որ էր յազգէ Թագաւորացն Աղուանից: Առաքեցաւ նոյն Վահան հրեշտակութեամբ յաշխարհն Հոնաց եւ դաշնաւորաց նոցա, եւ կռեցան դաշինք միաբանութեան Հայոց ընդ Հոնաց[1]:

## 135

Ուրախութիւն յաղթութեանն պղտորէր զուժիւ՝ որ ի Հայոց աշխարհէ եհաս՝ թէ յուխտէ քրիստոնէութեանն յետս եկաց Վասակ, աւերեաց հրձիգ արար զքաղաքս կողմանս միջոցի աշխարհին, առան ձմերոցք արքունի եւ կցեանք զօրացն Գառնի, Երամնք, դաստակերտն մեծ Գրոհանակերտ, Վարդանաշատ, ամուրն Աւշական, Փառախոտ, Արգեանք, Յողակերտ (Յողակերտ), Արմաւիր, Կուաշն աւան, Արուճ, Աշնակ, ամենայն տուն Արագածու, Արտաշատ, եւ ամենայն գեղք եւ աւանք նոցա, ընտանիք իւրաքանչիւր նախարարաց փախուցեալ մերժեալ, սպասք եկեղեցեացն ի բաց կողոպտեալ, քահանայք ի կապանս. քանզի գունդն Ներշապհեան չժամանեաց տալ ձեռն ի միջոց աշխարհին, եւ զօրն սակաւաւոր որ աստ ուրեմն կային, մեկնեցան յարեւմտեան եզր աշխարհին:

Ձեպէր ժողովել սպարապետն Հայոց զկայս Միոց զօրացն եւ թէպէտ եւ շատ եւս աճապարէր՝ յետ ամսաւոր ժամանակի հազիւ հասանէր ի սահմանս Հայոց աշխարհին (450 Հոկտ.—Նոյ.): Սակայն առ հն նորա վաղագոյն ընթանայր առաջի նորա. լուր յաղթութեանցն փութացոյց տագնապեցոյց զիշխանն Միհնեաց ելանել յԱյրարատ գաւառէ թողեալ զգերին եւ զաւարն, ապաստանել յամուրս աշխարհին իւրոյ: Այսպէս ինքն սպարապետն եւ նախարարքն գործակիցք բռնացան կալան միաւանգամ զԹագաւորանիստ տեղիսն եւ սփռեցին զզօրն ընդ ամենայն աշխարհն, քանզի զռամիկս՝ թշնամեաց գնդին հարեալ էր եւ չգայր այնուհետեւ պատերազմ ի միջի, զի ձեռն ի վերայ կայր, բայց միայն յաստատակաւորացն՝ զոր յարձակէր ստէպ յաշխարհն Միհնեաց: Սահմանեցաւ յեպիսկոպոսապետէն զամենն քաղաք անցուցանել պահովք եւ աղօթիւք եւ յետ այնորիկ վասն գոհութեան յաղթութեանն առնել տարեկան միշտնջենաւոր խառն ընդ տօնի Յայտնութեանն Քրիստոսի (451 Յունուար.):

Այնուհետեւ զամենայն ժամանակս ձմերայնոյն յերկուս իմն

1 Եղիշէ, էջ 91—134: Փարպ. էջ 94—113:

եպիսկոպոսացն զոր յետ յաղթութեանն յԱղուանս եւ զդրանց այսրէն Ըմբարատ Նահանգի ի ձեռն Վարդանայ՝ առաքեալ էին պատմել ուխտին Կոստանդնուպօլսոյ զաւետիսն, եւ խնդրել զաղօթս նոցա, եւ որպէս հաւանութեան թուղ՝ զքաջախօսութիւն նոցա առ կայսր վասն օգնականութեան Հայոց աշխարհին:

Նմին հնարիւք ի բաց կալաւ Վասակ եւ զիշխանս ամրական կողմանցն զՏմորեացն, զԿորդուաց, զԽաղտեաց, որ են զԱրզախաւ, զՎրաց եւ զԱղուանից եւ ի բաժնէն Յունաց զԴեղեշեան Եղձնեաց որ յօժարագոյն էր յօգնականութիւն, թէպէտ եւ բեր աղաչեցին հրեշտակքն առաքեալք ի Հայոց: Նոյնպէս եւ Հոնքն զդաշնաւորք արգելան անցանել ընդ պահակն ի ձեռն զօրացն Արքունի կոչելոց ի Վասակայ:

Ընդ այս ամենայն հայեցեալ թագաւորին Պարսից եւ զի չառին յանձն Հայք հաւատալ խարերայ խոստմանն թողութեան, այնուհետեւ առաքեցաւ ինքնին հազարապետն Պարսից Միհրներսեհ գունդս գունդս յամենայն աշխարհաց ի ձեռն գումարել եւ երամակս փղաց. հասեալ ի Փայտակարան քաղաք, անդ զեղ առեալ կայր դիտել ի մօտուստ զամենայն եւ խնամել ի պատգամաւորաց իշխանին Աղուանից զանցս ներքին կողմանց Հայոց աշխարհին եւ զչափ զօրութեան նոցա եւ պատերազմական արուեստին: Իսկ եւ զամենայն յարդարեաց, եւ տուապացոյց զգունդն ի վարձկանաց անտի Լփնաց, Ճղբաց, Վասաց, Գաւաց, Գղուարաց, Հեճմատակաց, Փախաց, Փոխաց, Թաւասպարաց եւ այլոց խառնաղանճ ազգաց լեռնորդեայց, այնուհետեւ զամենայն գունդն յանձն առնէր միւսում յաւագացն Մուշկան Նիւսալաւուրտ անուն եւ երկրորդ նմին թողոյր զԳողոմզան, որոց գործակից էր եւ ոմն յաւագացն Ատրորմիզդ՝ որ էր լեալ յառաջագոյն գործակալ ի Հայս, ցուցանէր նոցա զիշխանն Աղուանից խրատտու եւ առաջնորդ, զի քան յանձն իւր՝ առաւել ի նա էր յուսացեալ՝ յետ ուրախ առնելոյ զնա յուսով թագաւորութեան Հայոց աշխարհին, եւ պատերազմի հրաման տուեալ վասն գարնայնոյն, ինքն ի Տիզբոն առ թագաւորն փութայր: Այս հանգամանք էին իրացն ի վերջ կայս ձմերայնոյն (451)[1]:

## 136

Այն ինչ կատարեալ Հայոց զտօն աւուրց զատկացն ուրախութեամբ՝ լու լինէր թէ գունդն պարսկային ի Հեր եւ ի Զարաւանդ գաւառ հասեալ է՝ բանակ բոլորեալ, փոս հատեալ, պատնէշ կանգնեալ, շերտաւոր փակեալ եւ անտուստ սփռեալ ասպատակաւ ի գաւառս գաւառս: Հրաման տայր այնուհետեւ զօ-

1 Եղիշէ, էջ 134—169: Փարպ. էջ 113—116:

ըստամբացոյն Հայոց ժողովել զօրաց իւրաքանչիւր նախարարացն մե-ծամեծաց յիւրաքանչիւր տունս՝ ժողովել յԱրտաշատ քաղաք. անդ համարէին անձեր սպարապետոն, յանձանձէր եւ տեսանէր զպակասութիւն զինուն կամ երիվարի կամ հանդերձից զօրականին, եւ անտուստ առաքէր սեպուհ յազգէն Ամատունեաց Առանձար անուն այր իմաստութեամբ եւ քաջութեամբ՝ երթալ դիտել յառաջագոյն զզօրութիւն եւ զելս թշնամւոյն: Նորա երթեալ 300 հեծելովք (ըստ Փարպ.) կամ 2000 արամբք (ըստ Եղիշայի), եւ վճարեալ զոր գործ առաքեալ էր՝ անկանէր ապա յանկարծակի զվերջապահ թեւով միով թշնամւոյն, զկէսս կոտորեալ՝ զայլսն փախստեայ ի բանակն հանէր:

Աթափեցան զուարթացան զօրքն, եւ զի լուան յԱտամանցն թէ վաղ ի մէջոց կոյս աշխարհին շարժէր զօրն պարսկական, հաստատեցաւ ի խորհրդեան գլխաւորաց պատերազմին ինքնին ելանել ընդ առաջ թշնամւոյն յեզր աշխարհին՝ զի մի բուն աշխարհն միասնեսցի կոտորածիւ կամ գերութեամբ: Այլ գունդն արքունի ձեպեալ հասանէր ունէր վաղագոյն զմիջոց աշխարհին եւ յԱրտազ գաւառի առ գեղջն Աւարայրի ի շրջափակ տեղի ամրու դաշտին առ Տղմուտ գետով զակիշ գործեալ բանակէին: Ընդէմ դէմ յանդիման յԱրտազեան դաշտին հասեալ բանակէր եւ զօրն Հայոց (Մայ. 27): Դարձեալ երթեւեկք պատգամաւորաց լինէր՝ բերել խոստմամբ թողութեան ի Վասակայ բանիւ թագաւորին, լքուցանել զմիտս զօրականին: Այլ զօրավարն Հայոց ի մէջ անցեալ քաջալերէր զնոսա, յեա բազում բանից զգիրս Մակաբայեցւոցն ի ձեռն առեալ ընթեռնոյր նոցա, եւ զելս իրացն ցուցանէր համառօտիւ:

Ընդ ի վերջնում գիշերին առաջի հրեշտակաց գնդին արքունի հրամանաւ եպիսկոպոսապետին Յովսեփայ խորանեալ վառէր զնոսա երէցն Ղեւոնդ: Որ երախայ ոք էր՝ մկրտեցաւ ի գիշերին, եւ ի հաւախօսին կատարէր պաշտօն կանոնին, եւ ապա ընդ առաւօտս ետուն ուղղեալ՝ հաղորդեցան զօրքն ամենայն տէրունական մարմնոյն եւ արեանն, իբրեւ նովին նպարակեալք. աղաղակեաց ամենայն բազմութիւնն թէ խառնեսցի արիւն մեր ընդ արիւն մարտիրոսացն եւ լիցուք պատարագ հաշտութեան վասն փրկութեան եկեղեցւոյն Աստուծոյ:

Իբրեւ հասան պատգամաւորքն ի մէջոյ՝ յիշեցուցանէր զօրավարն Պարսից զհրաման թագաւորին, զերդն եւ զպատիւն եւ զուխտն եւ զառատաձեռն պարգեւսն որ յարքունուստ շնորհեսցին, զկին եւ զորդիս, զանդս եւ զագարակս եւ զպատուհաս փախստէիցն: Կարգէր կազմէր Մուշկանն Նիւսալաւուրտ զիւր ճակատն, առ մի մի փիղ՝ երեք հազար սպառազէնս յաջմէ եւ յահեկէ կացուցանէր ընդ երկայնութիւն դաշտին, եւ զգունդն Մատեանիկ ամրացուցեալ

բռնակալացն եւ բարուքն ի դիմամարտս պատերազմացն ի մէջ եւ չքողը այնուհետեւ դիմաւոր ի մէջ՝ յոր յեցեալ ժողովելոց գունդ Մամ-ցերոցն։ Նմին եւս իսկ հասեալ անկանելին իւրաքանչիւր ի տեղիս տեղիս յամուրս աշխարհին բանակեալ ի վերայ բազում գաւառաց եւ բերդից։ Թիւ համարոյ անկելոցն էր միահամուռ 1036 (ըստ Եղիշէի) կամ 1035 (ըստ Փարպեցւոյն)[1]. երեւելիք յանկելոցն այրք էին (Վարդան, Խորէն, Արտակ, Տաճատ, Հմայեակ Դիմաքսեան, Ներսեհ, Վահան Գնունի, Արսէն Ընծայացի եւ Գարեգին Սրուանձտեան)։ Իսկ ի Պարսից անտի եւ ի Սիւնեաց գնդէն 3544[2], նոյնպէս էին ի նոցանէ յարանց երեւելեաց էին, Վասակ (երկրորդն Սեբուժան) ի մէջ փողոց զանձն թագուցեալ ապրեցոյց (451 Յունիս 2)։ Փութանակի առաքէր զօրավարն Արեաց զաւետիս յաղթութեանն առ թագաւորն հանդերձ մանր տեղեկութեամբ անցից պատերազմին։

Այլ չեւ էր գլուխ կռուոյն, զի թէպէտ եւ ճակատ առ ճակատ կռուել չէր հնար, սակայն ըստ հին իսկ սովորութեան Հայոց՝ առ ին այնուհետեւ մանր մանր պատերազմունք։ Ի հարաւոյ՝ որք յամուրս կողմանս Տմորեացն անկեալ էին՝ գնէին առէջ ապաստանակ ի սահմանս Պարսից գործել ապականութիւն բազում։ Ի հիւսիսոյ՝ որ ի թանձրախիտ մայրիսն Արձախու ապաստանեալ կային՝ յղէին յաշխարհն Հոնաց որ յառաջագոյն իսկ դաշնաւոր էին ընդ Հայոց, որք եւ հաւանէին դիմել յարձակել ի հիւսիսակողմանս տէրութեանն Արեաց եւ գործէին աւեր բազում պահակին։ Իսկ որ ի լերինսն Խաղտեաց յամուրսն Պարխարու ամրացեալ էին ընդ առաջնորդութեամբ Հմայեկայ Մամիկոնեայ եղբօր սպարապետին Հայոց՝ յարձակէին առէջ ի ձորագաւառն Տայոց ի վերայ պարսիկ զօրուն եւ յետ բազում վնասու մեծամեծս անդրէն ի նոյն լեառն։ Նոյնպէս եւ ի միջոցի աշխարհին բազում բերդք գրաւեալ էին, մանաւանդ մեծ ամուրքն Սասնոյ լերինն։

Վարանեցաւ տարակուսեցաւ զօրավարն Արեաց, զոր ցուցանէր զհրաման թողութեանն յայտնութեան, ոչ ոք անսայր պատգամաւորացն Վասակայ, յետ միոյ նուագի՝ զի խաբեցան այրք բերդի միոջ եւ ետուն ձեռս, բայց անդէն կոտորեցան որք 213 հրամանաւ զօրավարին ըստ խրատուն Վասակայ, բաց յեպիսկոպոսապետէն Յովսեփայ եւ ի Ղեւոնդէ երիցուէ որ բողք ի դուռն կարդացին։ Այնուհետեւ յետ կոտորածի պարսիկ զօրուն առ Արջնհաղ գեղջն Տայոց աշխարհին, զոր կոտորեցին միաբանեալքն ընդ

1 Եղիշէ՝ միահամուռ ընդ Լինեանցն՝ ասէ 296 ատն անկեալ եւ 740 եւս յառաջնոյն ատնէ եւ ի անմէն Արծրունեաց եւ յիւրաքանչիւր նախարարաց ատնէն անդէն ի նմին աւուր։ Իսկ Փարպեցի՝ յետ անկանելոյ, ասէ, ի ճակատու անդ 285 արանց հանդերձ Լինեանցն՝ այլ ըմբռնեալ ի փախստէից տանէին արդ կամ փրկ կոտորեցին 750 այր յերկրորդումն աւուրն (Յուն. 3.)։

2 Փարպեցին որ զայս միայն ընդ Եղիշէի ասէ՝ հաստատէ ի վկայութենէ արանց որ տեղեկացեալ էին ի զօրագլխացն Պարսից։

Հոնացեկեայ եւ յորում անկաւ ինքն իսկ Հոնայեան, դադարեցին զօրք Թագաւորին ընել խառնամուխ յամենայն կողմանս աշխարհին համարձակ եւ ընէին ձեռնպահ եկեղեցեացն, եւ գրեալ հրամաննէր միաբանգամ Մուշկանն Նիւսալաւուրտ յարքունիսն՝ ցուցեալ զիրացն նեղութիւն եւ զամենայն մնաս գործոյն զայն զՎասակայ արկանէր։ Այս համգամանք էին իրացն ի վախճան կոյս ամառնայնոյն։

Տրտմէր Թագաւորն մանաւանդ ընդ աւեր արշաւանացն Հոնաց, առաքէր հրաման յարքունուստ զի Մուշկանն ամենայն բանակաւն ի վերայ Հոնաց խաղայցէ եւ նորին նիզակակից Ատրորմիզդ Արշականն կալցի զՀայս մարզպանութեամբ փոխանակ Վասակայ՝ որում հրամայեցաւ ի դուռն գալ, եւ սիրով եւ խաղաղութեամբ նուաճեսցէ այսրէն զամենայն։ Ինքնին մարզպանն շուրջ եկեալ ժողովէր եւ շինէր զամենեսեան ուխտիւ հաստատութեան թողութեանն արքունի. բաց յեպիսկոպոսացն եւ յերիցանց (ի Սահակայ եպիսկոպոսէ Ռշտունեաց, ի Մուշեայ երիցուէ Արծրունեաց, ի Սամուէլէ եւ յԱբրահամէ երիցանց, ի Յովսեփայ եպիսկոպոսապետէ, ի Ղեւոնդեայ երիցուէ, ի Քաջաջայ սարկաւագէ եւ յԱրշէնէ երիցուէ) որ վասն աւերելոյ ատրուշանաց կամ բաղնելոյ՝ կապանօք յարքունիսն առաքեցան. այլոց եպիսկոպոսացն հրաման տայր զառաջին իշխանութիւնն եւ զպաշտօն հրապարակաւ ունել, թողուլ առ վայր մի զհարկս աշխարհին, զայրուձին թեթեւացուցանէր, եւ միայնակեցաց հրաման տանէր դառնալ այսրէն յետս եւ ամենեցուն իսկ փախստէից, ազատաց եւ շինականաց յարքունուստ ցուցանէր հրաման գալ ունել զիւրաքանչիւր սպաս. նա աւանիկ հրովարտակք արքունի հրաման տային՝ որոց ակամայ կալեալ իցէ զմոգութիւն՝ իշխել անդրէն ունել զքրիստոնէութիւն։

Շինութիւն աշխարհին եւ հաստատութիւն եկեղեցեացն հաւանեցուցին զնախարարսն որ վաղ իսկ կամ ռոճկին նուազութեամբ եւ կամ սաստկութեամբ ձմերայնւոյն ակնելոյ ի տագնապ կայլին՝ անկանել ի պատգամս ընդ մարզպանին՝ որ եւ ածել զնոր ողքանաց եւ ուխտ հաստատութեան թողութեան յարքունուստ վասն նոցա։ Այլ հարկ էր նոցա այնուհետեւ (ի վերջ 451 ամին)[1] երթալ ի կոչ Թագաւորին ի ձմերոցն արքունի փութանակի առանց կապանաց, թողեալ զկին եւ զորդիս եւ զինչս ի ձեռս մարզպանին[2]։

## 137

Լինէր (իսկզբան 452 ամին) ատեան հարցափորձի նախ առաջի հազարապետին Միհրներսեհի եւ ապա յանդիման Թագաւորին ի մէջ կողման նախարարացն եւ կողմանն Վասակայ. ի մէջ եկեալ

1 Փարպ. էջ 129—130։

2 Եղիշէ, էջ 171—234։ Փարպ. էջ 123—133։

երեւելին Թուղթքն Վասակայ վաւերական մատանեաւք նորա յաշխարհն Վրաց, Աղուանից, յԱղձնիս, առ կայսր եւ առ սպարապետն Անտիոքայ[1] Անատողիոս. մի ըստ միոջէ եկին ամբաստան Մուշկանն Նիւսալաւուրտ վասն խաբէութեանց նորա եւ գողութեան հարկաց արքունի, մինչ նեղեալք ի Հայոց աշխարհին, իւր իսկ ազգականք ցուցանէին զմիաբանութիւն նորա երբեմն ընդ Հեռանոսայ Հոնի, որ աւերեալ էր զերկիր տէրութեանն Պարսից, Աղուանից, Հայոց եւ Հոռոմոց, եւ յետ այնորիկ զմիաբանութիւնն եւ զառաջնորդն լինել Հայոց ապստամբութեանն, նոյնպէս եւ քահանայք չմտին ինչ նմին ջատագով: Յանդիմանեաց զնա սաստակակոծ Թագաւորն, եւ մերկացուցանել յօրինաց պատուոյն՝ որով զարդարեալ նստեալ կայր ի ներքին հրապարակի մեծամեծացն, կապեալ ձեռօք եւ կապեալ ոտիւք հեծուցեալ ի ձի մատակ կանացարար տարան ետուն ի բանտ մահապարտացն. խափանած հարկաց աշխարհին արկաւ ի վերայ տան նորա, անգամ եւ զհարց եւ զհաւուց եւ զեւր արարս եւ զզարդս կանանց եւս եւս ի տոյժսն եւ ոչ կարաց հատուցանել, մինչեւ հարցանել թէ կայցէ ինչ գանձ ի գերեզմանս նախնեաց իւրոց: Ընդ կեցեալ ի մալրոյ ձեռաւուն ծառայիցն՝ ապա քամեալ ի Թանձրամածութենէն՝ տարեալ աղնարէից մեռանէր, հեծեծեալ ընդ յանցանան ամս քանի մի, ծեծելով զեւր դէմս «ընկալ, ասէր, անձն մեղաւոր, զձաղս զոր եւ բերել քեզ ուխտանենգութիւն աւետարանին եւ արիւնն Վարդանայ եւ այլոցն ցանկալի հաղորդելոցն ընդ նմա»[2]: Այսպէս այն որ կամէրն մեղօք Թագաւոր լինել Հայոց աշխարհին ոչ երեւեցաւ տեղի գերեզմանի նորա յայնմ աշխարհի: Իսկ տէրութիւն Սիւնեաց աշխարհին անդէն ի նմին աւուր մահապարտութեանն տուաւ Թշնամւոյ նորա եւ փեսայի՝ Վարազվաղանայ:

Սակայն եւ ոչ նախարարքն ինչ արձակեցան իբրեւ արդարացեալք. պահեցան նոքա զգուշութեամբ ընդ այն ի նախարարաց որ յառաջագոյնն արգելեալ կային անդ՝ ի ձմերոցին ի Վրկանս եւ յամէ 454 ի դղեկին Նիւշապուհ քաղաքի յԱպար աշխարհին, առհասարակ արք իբրեւ 35 կամ 37: Յազգէն Սիւնեաց՝ Բաբգէն եւ Բակուր եղբարք, յԱրծրունեաց՝ Ներշապուհ, Շաւասպ, Շնգին (կամ Շնդին), Մեհրուժան, Գարգեւ եւ Տաճատ, ի Մամիկոնէից՝ Համազասպեան, Համազասպ, Արտաւազդ եւ Մուշեղ, ի Կամսարականաց՝ Արշաւիր, Թաթ, Վարձ (կամ Վարձոյ), Ներսեհ եւ Աշոտ, յԱմատունեաց՝ Վահան եւ Առանձար եւ Արնակ (կամ Առնակ), ի Գնունեաց՝ Ատոմ, ի Գրիգորեանից՝ Թաթուլ եւ Սատոյ այլ եւս երկու ազգակցօք, յԸնծեւացեաց՝ Շմաւոն, Զուարէն եւ Առաւան, յԱռաւեղենից՝ Փա-

1 Զոր Փարպ. «Սպարապետն Անտիոքայ» ասէ, օրինակքն Եղիշէի ունին՝ «Սպարապետն Անտիոքոս»:

2 Բանք զոր ի ծառայից իւրոց նորա լսեալ գրէ Փարպեցի:

պակ, Վարազդէն եւ Գուրգ, ի ձեռս Արծրունեաց՝ Արշաւամ, ի Մանդակունեաց՝ Սահակ եւ Փարսման, ի Ձաւրացեաց՝ Վահէն, յԱփխազից՝ Բաբիկ եւ Յոհան (կամ Յովհանան)։

Քահանայք որոց մեծ մասն զատուցելոց ընդ սոսա էր կապեալ տանէր շղթայիւք յօրինելովք ի մօրուցն՝ սպանան մի ըստ միոջէ։ Քանզի իբրեւ վասթարացաւ Թագաւորն յարշաւանս անդ ընդդէմ Քուշանաց (յամի 454) որք ի նեղ արկին զնա անկանելով ի վերայ միոյ միոյ ի թեւոց նորա անձամբ գնդաւ, բաց խոստովանահազարապետութեն՝ արկին մտքն զձեռն զպատերազմելովքն քահանայութիւնք, զի իբրեւ ի սպանողաց կրակի չենթարկեցաւ վրէժ տառապանացն նորեանց։ Ընդէն Սամուէլ երէց եւ Աբրահամ սարկաւագ երկոքեան յԱյրած գեղջէ Արտաշատայ որ ի կապանսն էին՝ սպանան գաղտ ի Վարդէս (ըստ Փարպ. Վարդգէս), որպէս եւ Թաթիկ եպիսկոպոս Ռշտունեաց տարեալ երբեմն ի Վասակայ (յամի 450) իբրեւ ձեռնասակար յարքունիս՝ սպանաւ այժմ յԱպարստանի։ Առաջ առաքեցաւ ամբարակապեան Դենշապուհ կամ Մեհ Դենշապուհ ի Նիւշապուհ եւ յանապատի ուրեք հեռի ի քաղաքէն մօտ ի Ռեւան գեւղ սպանան յետ բազում հարցափորձի Սահակ եպիսկոպոս Ռշտունեաց, Յովսէփ ի Վայոց Ձորոյ ի գեղջէ Հողոցմանց, Ղեւոնդ երէց ի Վանանդայ ի գեղջէ Իջեւանից, Մուշէ դպրան երէց Արծրունեաց յԱղբակոյ, Արշէն երէց յԵղեգեկոյ Բագրեւանդայ, Քաջաջ սարկաւագ Ռշտունեաց ի Նիւշապուհ քաղաքէ (Յուլ. 31)։ Մոգպետ մի իշխան գնդապետ Ապար աշխարհին, անհնարին հմուտ օրինացն նոցա, որում յանձն եւս էր պահպանութիւն կապելոցն քահանայից, այն ինչ դարձեալ էր ի քրիստոնէութիւն յետ տեսլեան իւրոյ եւ յայտնութեան նշխարաց ընծայից. Հարց զնա Դենշապուհ ի ծածուկ եւ առաքեցաւ զաղտ յանկարծ քան զՅուդան եւ զՄակարան եւ անդէն ընկեցաւ ի վերայ (454)[1]։ Աշակերտք եպիսկոպոսացն, Խորէն եւ Աբրահամ, յետ կտրելոյ զականջսն նոցա՝ առաքեցան յերկիրն Բաբելոնաց ի Շահուղ (կամ Շարուղ) ի գործ մշակութեան արքունի, որք անդադար ճանապարհորդութեամբ ընդ Շահուղ, ընդ Մծբին եւ ընդ Քաշկար՝ ժողովեցին սուրբ ի հաւատացելոց աշխարհին Ասորեստանի եւ Խուժաստանի, տանել կամ առաքել թոշակս առ նախարարսն կապեալս՝ առ յամս, մինչեւ առ Ջերմոնյն վասանդքի ժամանէր Խորէն յԱսորեստանի, եւ յետ սակաւ ինչ առաքեցաւ ի նախարարացն, եւ հաւատացելոցն Ասորեստանեաց տարեալ երաշխաւորութիւն ընչից փոխանակ ընդ հարկի նոցա՝ եկն ի Հայս եւ ողջունեցաւ ուրախութեամբ իբրեւ կարապետ ազատութեան նախարարացն (463) եւ յետ սակաւ ինչ կարգէր յեպիսկոպոսութիւն աշխարհին Բզնունեաց[2]։

1 Վասն մոգպետին չէր անհնարին յիշատակ առ Փարպեցւոյն։ 2 Փարպ. 185։

Իսկ ընդ նախարարսն՝ որ ոչ ի նոցանէ միայն, այլ եւ ի կանանց անտի ընդունէին թոշակս՝ զոր առաքէին նոքա առ յամէ ի մխիթարութիւն, համամնելով ի ռոճկէն կարգելոյ նոցա յարքունուստ[1], վաղ գութ արկեալ էր վերակացու աշխարհին Վրեւայ Վարբեւ (Ըզոմշապուհ կամ Վրեւ (Նոմաշապուհ եւ Ջանայր ազգի ազգի հնարիւք ածել ի հաւան զթագաւորն արձակել զնոսա։ Այլ թագաւորին վախճանեալ ընդ նոյն աւուրս (458), ընդ հակառակս ելեալ երկուց որդւոցն Որմիզդատայ եւ Պերոզայ ի վերայ աթոռութեանն կռուէին. եւ էր այնուհետեւ ընդ երկուս բաժանեալ գունդն Արեաց՝ մինչեւ դայեակն կրտսերոյն Ռահամ անուն ի Մեհրան տոհմէն եւս ճակատ ընդ երիցուն, արար ձերբակալ եւ սպան առ եւոք, եւ այնպէս թագաւորեաց սանն նորա Պերոզ միահեծան (յամէ 460)։ Ընդէն յառաջնում ամի միահեծան թագաւորութեանն առաքեցաւ ի թագաւորէն Յըզդատ Վըշնասպ նորին դայեկորդի սիրելի, արձակեցան նախարարք ի կապանացն, ածան ի Վրեւ եւ կարգեցաւ նոցա ռոճիկ եւ տուեալ նոցա ազատագինութիւն եւս՝ հրամանաւ Աշտատայ հօր Յըզդատն Վըշնասպայ առաքեցան ի մարս պատերազմի ընդ այլուձիոյն[2]։ Արգելան նոքա այնպէս յարքունիս ամս երիս կամ չորս՝ վասն ապըստամբութեան Աղուանից այլազգի քեռորդւոյն Պերոզի (457—463). զի զգլխացեալ նորա ընդ ուրացութիւնն՝ առ զէն, խրամատեաց զպահակն Ճորայ, եբեր զօրս ի Մազքթաց, միաբանեաց զ11 թագաւորսն լեռնորդեայս եւ ընդդէմ եկաց պատերազմաւ ընդ Արեաց գնդին եւ գրով եւ պատգամաւ յանդիմանէր զարքունիսն "ի վերայ այնչափ սիրոյ եւ վաստակոց Հայոց աշխարհին, փոխանակ կեանս տանելոյ՝ զարեւ հատէք, ասէր»։ Յետաւուր յանձն առ թագաւորն կալ նմա քրիստոնէութեամբ, որ եւ թողեալ զթագաւորութիւնն դարձաւ ի վարս վանականութեան (463)։ Ի միւսում ամին արձակեցան նախարարք յիւրաքանչիւր տունս իւրաքանչիւր կենօք եւ պատուով (464)։

Այսպէս ընդ բառնալ թագաւորին եւ գործակցացն նորա՝ լուծեալ խաղաղէր ամենայն աշխարհն. Միհրներսեհ յառաջ իսկ քան զմահն Յազկերտի կամ առ Պերոզիւ փոխեալ էր ի գործոյ հազարապետութեանն եւ Վնասակար եւս զատեալ ի գործ արքունի. սակայն պատմի զնմանէ[3] ապա ուրեմն յաղթեալ ի հաստատութենէ մտաց կապելոցն՝ սէր արկեալ ընդ նոսա, եւ բարեխօս լեալ վասն նոցա առ թագաւորին եւ զամենայն աւեր աշխարհին Հայոց յիւրն կրթեալ[4]։

1 Եղիշ. էջ 360։

2 Այսպէս ըստ Փարպ. այլ Եղիշէ զայս ամենայն գնէ առ Յազկերտիւ լեալ, ասելով ժամանակագրութիւն նորա՝ որ հակառակ է ասա պատմութեանն իւրում՝ է փոքրն պատմութեանն եւ ժամանակագրութեան փարպեցւոյն, քանզի իւրն Եղիշէ 9 ամս եւ ամիսս 6 առնէ լինել նախարարաց ի կապանս, որ է 452—460, ուր ըստ նորին իսկ Եղիշէի մեռաւ Յազկ. յամի 458։

3 Եղիշ. 346—347։

4 Եղիշէ, էջ 334—355։ Փարպ. 133—190։

Սակայն այն ամենայն շրջան մի էր կրօնականաց պատերազմի. մեւս եւս շրջան նորին պատերազմի ի վերայ կայր տակաւ այլով թագաւորաւ եւ այլովք գործակցօք՝ հակառակ այլոյ ուղղաւք ի դիցազանց Մամիկոնեան տոհմին:

## 138

Ընդ նոյն ժամանակս արքունիքն Պարսից մեղմականան հնարիւք զայն վարէին յառաջ զոր նախն ի մեծ եղին: Ի գլուխ գործոյն կայ մարզպան պարսիկ նստեալ ի Դուին, նախ Արտաշիրգ (յամէ 452) եւ յետ նորա Արտավշնասպ Յազկերտեան հանդերձ պարոնի հազարապետաւն Հայոց՝ որոյ Վեհ Վեհնամ անուն էր: Տակաւ իբրեւ խմոր սփռէր զաղտ դենն մազդեզն. որպէս ի հեռաւորութեան նախարարացն կալանաւորաց, նոյնպէս եւ յետ սպանման նոցա՝ զահք տանուտէրութեան նախարարութեանց, գործակալութիւնք արքունի եւ ամենայն պատիւ մեծարանաց յիշխանին Հայոց՝ էր գնոց ուրացութեան յարքունիս թագաւորին, չգոյր մարդ անարգ՝ որ ոչ փառաւորէր ի թագաւորէն ընդ երկրպագութեան արեգական, եւ ոչ վտանգ ինչ երեւէր՝ որ հանդիցէ արքունեաց առանց պաշտաման կրակի: Այսպէս տակաւ յետս ընկրկէին որ առաջինիք ոք քաջք էին յիրի եւ ի բանի, եւ այնուհետեւ այն այրուձին քաջ որ բուն զօրութիւն պատերազմի բանակին էր, այլ վատ եւ ապաժաման քան զամենայն զունդ Պարսից՝ զՀայոց գունդն անուանէր թագաւորն: Գլխաւոր ուրացելոցն էր մաղխազն կամ Խորխոռունին Գադիշոյ, յոր յարեցաւ յետոյ եւ նորին ազգակից Գարջոյլ, եւ Գդիհոն տէր Սիւնեաց՝ պայազատ Վարազվաղանայ. սոքին էին խրատտուք եւ քաջալերիչք մարզպանացն եւ զօրավարացն Պարսից առ ի վնաս իւրեանց տոհմային քաղաքացեացն:

Յետ Յովսեփայ՝ կային մի ըստ միոջէ Մելիտէ կամ Մելիտոս Մանազկերտացի, Մովսէս Մանազկերտացի եւ Գիւտ յԱրահեզայ Տայոց: Սա անդստին յամէ 465 յորդ հմտութեամբն եւ ճարտարխօսութեամբ զոր ի վերայ եկեղեցական նախանձաւորութեան ունէր՝ առաւել իւր զօրութեամբ հակառակ չարեացն եղանէր, փոյթ ի վերայ ունելով հրահանգաց կրթութեան ժողովրդեանն, բայց առանձինն իսկ ի վերայ մանկտւոյ նախարարացն, մանաւանդ տոհմին Մամիկոնէից եւ Կամսարականաց:

Վահանի եւ արդեամբք իսկ մեւս եւս սաստ անինկալութեան դարձեալ ի տոհմէ անտի Մամիկոնէից շողայր ի պղտոր միգին: Վարդանայ անժառանգ յարու մանկանէ վախճանեալ՝ մնայր տանուտէրութիւն այնր տոհմի՝ եղբօրորդւոցն յետ մահու հօրն նոցա Հմայեկի: Վասակայ վաղ ըմբռնեալ էր ի զտոսա ձեռաց դայե-

կռուոյն (450) եւ առաքեալ յարքունիսն (452) իբրեւ հաճոյ ինչ կամեցեալ առնել Թագաւորին՝ որ ետ զմանկունսն ցիւր հազարապետ ցՄիհրներսեհ, մինչեւ արար երեսս աղաչանաց Աշուշայ Վրաց բդեշխի եւ պարգեւեաց նմա իբրեւ կարի առն սիրելւոյ եւ վստահակաւորի, որ դարձոյց իսկ զնոսա առ մայրն իւրեանց Ձուիկ՝ զորոյ զքոյրն զԱնուշվռամ ունէր ի կնութեան բդեշխն: Ընդէն ի Վրաց աշխարհին ընդ խնամատուն առաջնորդութեամբ մօրն սնեալ զարգացանային Վահանն եւ Վասակ եւ Արտաշէս, իսկ կրսերագոյն քան զամենեսին Վարդ՝ նա առ դայեակն ի Տայս էր եւ անդ ածաւ ի դուռն արքունի: Ի տոհմէ Կամսարականացն խնամելոց տանն Մամիկոնենից՝ էին նշանաւոր որդիքն Արշաւրայ՝ Ներսեհ տէր Շիրակայ եւ Հրահատ: Յաջողակութիւն պատանեկացն՝ մանաւանդ անդրանկանն Մամիկոնենից Վահանայ՝ որում յանձն էր գործ ոսկեհատին արքունի, սիրելի առնէր զնոսա գործակալացն Պարսից որ ի դրանն դային, եւ համբաւն նոցա առ Թագաւոր անդր հասանէր: Սակայն ոչ միայն յիշատակք գործոց նախնեացն նոցա՝ որոց հանապազ պատերազմաւ աշխատ կալեալ էր զԱրիս, որպէս եւ քնէին ընդունելոյ զարժան պատիւն, այլ եւ ազդակցացն ամբաստանութիւնք վասն ապստամբութեան հայր տէր յարքունիս զՎահանայ հասանէին: Այնչափ հրապոյրքն եւ մենքենաւորութիւնք զօրեցին՝ զի ածին զնա երթալ ի դուռն եւ ուրացանել ըստ հօրեղբօրն օրինակի եւ արձակեցաւ ի Հայս յետ դարձոյ եղբօր նորա Վարդայ մնալ անդէն իբրեւ պատանդ (յամի իբրեւ 479): Այլ այն սորջանք յանկարծական գործոյն՝ առաւելագոյն եռանդն ածին նմա ի ջնջումն այնպիսի արատոյ կենացն եւ մխիթարանայն ի շահ եկեղեցւոյ:

Վաղ իսկ մեծապէս խորհրդով եպիսկոպոսապետին Գիւտայ եւ նախարարացն աստուածապաշտաց առաքեցաւ մի անգամ եւ երկիցս գաղտ պատգամաւորութիւն առ կայսր Լեւոն Ա. (յամի իբրեւ 470), այլ առաւել քան զյոյս եւ զխոստումն՝ ոչ ինչ օգնականութիւն արդեամբք ի կայսերէ հասանէր, միայն հրաման տայր կայսր պաշտպանելոյ փախստէիցն Հայոց յիւրում բաժնին: Ամբաստանութիւն եւս վասն նորին կրէր եպիսկոպոսապետն ի ձեռն Գադիշոյի, կոչեցաւ եւ ի դուռն եւ ի գործոյ պաշտամանն ի բաց մերժեալ՝ դարձաւ յաշխարհն կալ առանց իշխանութեան (472—475):

Սակայն խորհուրդ նախարարացն կայր մնայր դիպող ժամու՝ որ յետ անկեալ ինչ էլ նոցա ընդ առաջ: Մինչդեռ ի կռուի ուրեմն էր Թագաւորն ընդ Հոնացն Հեփթաղաց (481)[1], Վախթանգ բդեշխ Վրաց սպան զուրացեալ Թագաւորն Վրաց զՎազգէն,

1 Փարպ. էջ 205: Գրական. Պարս. պատմ. Ա. Յ:

նուագ սակաւք միաբանեցին ընդ Մամիկոնեան տոհմին. միոյ սեպուհք ոմանք, Յովհան Ընծայեցի եւ Ներսեհ Ճշրուանդանի, եկին ի կողն պատրաստութեամբ. նա աւանիկ եւ զօրացս եւս պնդեցան զհետ իշխանք Ընծայեցեացն եւ Մոկաց՝ Աշուշակ. եւ Յովհան այրուձիով առ քաղաքագեղիւն Ըսեստասա (482 Մար կամ Ապր.)։

Ընդէն զարնայնի հասանէր գունդ պարսիկ ի Հեր եւ ի Զարեւանդ գաւառ գլխաւորօքն՝ պահլաւն Միհրանաւ, Վշնաս Նիխորեան, Ատրվշնասպայ Նիխորակեան կամ Խոսրակեան կամ Ցապեան եւ Գդիհոնաւ տերամբն Ախնեաց, եւ ի վերայ ամենեցուն Ատրներսեհ փուշտիպանացն սալար։ Ճեպեաց Վահան ի Դընայ, եւ յետ օրհնութեան կաթուղիկոսին՝ որ ընդ նմա իսկ եկեալ էր, դարձեալ յԱրտազ գաւառի առ Ներսեհապատաւն գեղիւ ճակատն յարդարեցաւ։ Ամենայն զօրութիւն ճակատուն աուձին էր, ի միջոցի՝ մարզպանն Վահան, ընդ աջմէ՝ Բաղդ կամ Բարշղ Վահեւունի, Բարգէն, Ասամ եւ Փապագ Պալունի, յահեկէ՝ կամսարականքն եւ եղբայր սպարապետին, եւ ինքն իսկ սպարապետն հանդերձ Վրենաւ Վանանդացւով պատրաստ էր յօգնականութիւն տկարացեալ կողմանն։ Զառաջինն՝ միջոց գնդին Հայոց աղմկեցաւ եւ աջակողմն գնդին Հայոց հարաւ եւ երթայր փախստեայ, այլ յաղթութիւնն որ ի ձախում թեւին անգ միաբան գործակցութեամբ գնդին Վահանայ ընդդէմ աջոյ թեւին՝ ուր Կատուշքն եւ գունդն սիւնիէր, գործեցաւ, քաջալերեաց զնոսա դառնալ յանկարծ ի վերայ հալածչացն։ Ցրուէր բանակն պարսիկ՝ թողեալ վիրաւորս առաւել քան զմեռեալսն։ Դառնային Հայք լցեալ աւարաւ առ կաթուղիկոսն Յովհան խնդալից որ «ոչ այնչափ ընդ յաղթութիւնն ուրախ լինէր, որչափ ընդ այն՝ զի հաշտ զԱստուած ընդ նոսա տեսանէր»։ Լրումն ուրախութեանն լինէր աւետեօք գալստեանն Վարդայ կրսերոյ եղբօր սպարապետին՝ որ ի կապանացն փախուցեալ եկեալ էր զքանչելի իմն օրինակաւ (Մայ. — Յուն.)։

Այն ինչ ի գլուխ հանեալ նոցա զպատերազմն եւ հանգչէին ի ջերմկին Վարշակի՝ դեսպանք ի Վրաց հասանէին. քանզի մեծ եւս գունդ պարսիկ զօրավարութեամբ Միհրանայ անդր դիմեալ էր, եւ թագաւոր աշխարհին Վախթանգ չժամանեալ հանել Հոնս՝ խոյս տուեալ ի սահմանակից լերինս Հայոց՝ խնդրէր թիկունս ի Հայոց ըստ դաշանցն պայմանի, առանց ի վեր հանելոյ թէ Հոնք չեկին ի կռիւն։ Ճեպէր զօրն հայազունդ ի սահմանակից գաւառն Կանգառաց, պատրէր զնոսա Վախթանգ մօտալուտ գալստեամբ Հոնաց՝ մինչեւ ի լերանց անտի ա՛ռ տարաւ զնոսա ի դաշտավայրսն Ճարմանայնոյ առ Կուր գետով։ Յետ աւուրց ինչ հասանէր կայր եւ Միհրան յայնկոյս գետոյն. եկն յայս խաբէու-

թիւն թագաւորին, այլ հարկ էր այնուհետեւ ճակատել սա-կաւաւորեան ընդ հարուստ գնդին, զաջակողմն թեւոյն առեալ Բարշղէ Վահեւունեաց եւ Սատոնի Գարեղինի, զձախակողմն Վախթանգայ, եւ զմիջոցն՝ Վահանայ: Մասն մի գնդին Հայոց անց ի կողմն, անկաւ Սահակ ասպետ եւ մարզպան եւ եղբայր սպարապետին Վասակ՝ որ ի խառնուրդս անդ տեսեալ զՆերսեհ Կամսարական՝ զի խնդրէր նիզակ փոխանակ այնր որ բեկաւ, ձայն ի վերայ եղեալ ասէր «Փութա, Ներսեհ, դառնել նիզակ եւ դար-ձիր ետ արագ, քանզի ոչ երբեք կարեմք գտանել ժամ պատշաճ այսպիսի վաճառոց, ուր մահ զանմահութիւն եւ առժամեայն՝ զյաւիտենականն առնու»: Ցրուեցաւ գունդն Վրաց եւ զօրն Հայոց ուշ ունէր այնուհետեւ փախստեան ոչ առանց ինչ կար-գի: Զ Բաբգէն Սիւնի եգիտ խոց կարեվէր սպարապետն ի մէջ դիականցն զձանապարհայն եւ հեծոյց ի նժուգի, բայց Հրահատ Կամսարական՝ զոր ընկէց երիվար իւր, անկաւ ի ձեռս Միհրանայ (482 Յուլ. կամ Օգոստ.):

Այնուհետեւ մանր մանր կռուովք՝ օգնեալ ի տեղեացն հըմ-տութենէ խաղ առնէր Վահան սակաւաւորօք զզօրավարս Պար-սից մի ըստ միոջէ: Միհրան ընդ որով նուաճեալ էր համօրէն աշխարհն Վրաց՝ պնդել պնդէր համարձակ զհետ Վահանայ եւ զսակաւաւորացն որ ընդ նմա էին. բայց մինչդեռ ի սահմանակցու-թեան Տաշրին Հայոց ի Գուռ գեղջն խօսէր պատգամաւորու-թեամբ ընդ սպարապետին՝ որ ի Մ՟կնառինջն բանակեալ էր բա-ցադոյն ի նմանէ երկուք հրասախօք, կոչեցաւ նա յանկարծ յետս ի դրանէ, եւ մեկնէր անդէն զօրավարն պարսիկ յետ զՀրահատ արձակելոյ եւ զՅազդ Սիւնի չարախօսութեամբ Սիւնեայն Գդի-հոնի գլխատելոյ ի Բագաւանի (Սեպտ. 25)[1]:

## 139

Գրաւէր այնուհետեւ Վահան համարձակ զմիջոց աշխարհին, մատչէին ուխտք պատարագաց ի Վաղարշապատ եւ յաստանին իւրում ի Դուին: Իսկ ի գլուխ ձմեռն մինչեւ գարնայնի հասանէր նոր գունդ պարսիկ զօրավարութեամբ Զարմիհր Հազարաւուխ-տայ (483): Սա անցեալ ընդ Երասխ առ Արտաշատաւ՝ թելա-դրութեամբ Հայոց ոմանց ուխտանենգաց աճապարեալ ենն յա-տան անդր. ճակատեցաւ վաղվաղակի առաջի մայրեացն Խոսրո-վակերտի մօտ ի Դուին ի դաշտագետին վայրի: Այլ Հայք յետ վանելոյ նոցա՝ ապա եկին փախստեայ միաբանգամ յամուր տեղիս սահմանացն Խաղտեաց. կաթողիկոսն Յովհան՝ որ չժամանեաց մեկնել ի քաղաքէ յառաջ քան զճակատն, առ տագնապի փա-

1 Փարպ. եջ 190—245:

